ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ ● 1977

## СОДЕРЖАНИЕ







## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1977 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆՎԱՐԻ 31-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 60-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ

1977 թվականի նոյեմբերի 7-ին լրանում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վաթսուներորդ տարին։

Հոկտեմբերի վաթսունամյակը կարևոր ուղենիշ է սովետական ժողովրդի կյանքում, ամբողջ համաշխարհային ազատագրական շարժման զարգացման մեջ։ Մեր երկիրը, ամբողջ առաջադեմ մարդկությունն այդ նշանակալի տարեթիվը դիմավորում են սոցիալիզմի, Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների նոր հաղթանակների նշանաբանով, գաղափարներ, որոնք փայլուն կերպով ցուցադրում են իրենց հեղափոխական-վերակերտիչ մեծ ուժը։

Սովետական մարդիկ Հոկտեմբերի փառապանծ հոբելյանը նշում են բարոյա-քաղաքական հսկայական խանդավառությամբ, հայրենասիրական նոր գործերով, կյանքում մարմնավորելով հարազատ կոմունիստական կուսակցության XXV համագումարի պատմական որոշումները։

Վեց տասնամյակ առաջ Ռուսաստանի հերոսական պրոլետարիատը, Վլադիմիր Իլյիչ Լենինի գլխավորած բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ, վճռական գրոհի ելավ և խորտակեց բուրժուա-կալվածատիրական կարգերը։ Շահագործման, սոցիալական և ազգային ճնշման դեմ աշխատավորների պայքարը պատմության մեջ առաջին անգամ ավարտվեց նրանց լիակատար հաղթանակով։

Հոկտեմբերի հաղթանակը 20-րդ դարի գլխավոր իրադարձությունն է, որն արմատապես փոխեց ամբողջ մարդկության զարգացման ընթացքը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում հասարակական զարգացման, դասակարգային պայքարի օրինաչափ հետևանքը եղավ։ Նրա հաղթանակի շնորհիվ երևան եկավ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը։

Սովետական իշխանությունը աշխարհի բոլոր ժողովուրդներին ցույց տվեց պատերազմների արյունալի քաոսից դուրս գալու միակ ճիշտ ելքը, պատերազմներ, որոնց հորձանուտը նրանց նետում էր շահագործողական հասարակարգը։ Հաստատված նոր իշխանության առաջին պետական ակտը եղավ հաշտության մասին լենինյան դեկրետը, որը հռչակեց արդարացի, դեմոկրատական, ընդհանուր խաղաղության պայքարի պարզ ու հստակ ծրագիրը։ Մեծ Հոկտեմբերը բացեց նոր դարաշրջանը՝ կապիտալիզմից սոցիալիզմին մարդկության անցման դարաշրջանը, «Իմպերիալիզմից ժողովուրդներին ազատա-

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ 1977

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1977 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆՎԱՐԻ 31-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 60-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ

**1977 թվականի նոյեմբերի 7-ին լրանում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վաթսուներորդ տարին:**

**Հոկտեմբերի վաթսունամյակը կարևոր ուղենիշ է սովետական ժողովրդի կյանքում, ամբողջ համաշխարհային ազատագրական շարժման զարգացման մեջ: Մեր երկիրը, ամբողջ առաջադեմ մարդկությունն այդ նշանակալի տարեթիվը դիմավորում են սոցիալիզմի, Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների նոր հաղթանակների նշանաբանով, գաղափարներ, որոնք փայլուն կերպով ցուցադրում են իրենց հեղափոխական-վերակերտիչ մեծ ուժը:**

**Սովետական մարդիկ Հոկտեմբերի փառապանծ հոբելյանը նշում են բարոյա-քաղաքական հսկայական խանդավառությամբ, հայրենասիրական նոր գործերով, կյանքում մարմնավորելով հարազատ կոմունիստական կուսակցության XXV համագումարի պատմական որոշումները:**

**Վեց տասնամյակ առաջ Ռուսաստանի հերոսական պրոլետարիատը, Վլադիմիր Իլյիչ Լենինի գլխավորած բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ, վճռական գրոհի ելավ և խորտակեց բուրժուա-կալվածատիրական կարգերը: Շահագործման, սոցիալական և ազգային ճնշման դեմ աշխատավորների պայքարը պատմության մեջ առաջին անգամ ավարտվեց նրանց լիակատար հաղթանակով:**

Հոկտեմբերի հաղթանակը 20-րդ դարի գլխավոր իրադարձությունն է, որն արմատապես փոխեց ամբողջ մարդկության զարգացման ընթացքը:

**Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում հասարակական զարգացման, դասակարգային պայքարի օրինաչափ հետևանքը եղավ: Նրա հաղթանակի շնորհիվ երևան եկավ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը:**

**Սովետական իշխանությունը աշխարհի բոլոր ժողովուրդներին ցույց տվեց պատերազմների արյունալի քաոսից դուրս գալու միակ ճիշտ ելքը, պատերազմներ, որոնց հորձանուտը նրանց նետում էր շահագործողական հասարակարգը: Հաստատված նոր իշխանության առաջին պետական ակտը եղավ հաշտության մասին լենինյան դեկրետը, որը հռչակեց արդարացի, դեմոկրատական, ընդհանուր խաղաղության պայքարի պարզ ու հստակ ծրագիրը: Մեծ Հոկտեմբերը բացեց նոր դարաշրջանը՝ կապիտալիզմից սոցիալիզմին մարդկության անցման դարաշրջանը, «Իմպերիալիզմից ժողովուրդներին ազատա-**

գրելու, ժողովուրդների միջև պատերազմները դադարեցնելու, կապիտալի տիրապետությունը տապալելու համար, սոցիալիզմի համար» մղվող պայքարի դարաշրջանը (Լենին):

Հոկտեմբերյան հեղափոխության մեջ խորապես ու համակողմանիորեն բացահայտվեց բանվոր դասակարգի համաշխարհային ազատագրական մեծ առաքելությունը:

Հոկտեմբերի հաղթանակը պատմական շրջադարձ նշանավորեց մեր երկրի ժողովուրդների ճակատագրում: Նա մեր հայրենիքը փրկեց վերահաս աղետից, դեպի որը նրան հրում էր կառավարող շահագործողական դասակարգերի՝ կալվածատերերի և բուրժուազիայի, հանցավոր քաղաքականությունը, նրան դուրս բերեց իսկապես անկախ զարգացման, սոցիալ-տնտեսական և կուլտուրական համակողմանի առաջադիմության ուղին: Միևնույն ժամանակ Ռուսաստանի բանվորների և գյուղացիների հերոսական պայքարը, որն ստացավ ամբողջ աշխարհի աշխատավորների ջերմ ու գործուն աջակցությունը, ցույց տվեց, Լենինի ասելով, «բոլոր երկրներին ինչ-որ բան, այն էլ չափազանց էական բան, նրանց անխուսափելի և մոտալուտ ապագայից»: Նա բոլոր ճնշված, պայքարող ժողովուրդներին թույլ տվեց տեսնելու նաև իրենց գալիք հաղթանակը:

Բազմազգ Ռուսաստանի պրոլետարիատին վիճակվեց նոր հասարակարգի ստեղծման ռահվիրայի դժվարին, բայց և պատվավոր դերը: Արտահայտելով երկրի բնակչության բացարձակ մեծամասնության արմատական շահերը, բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիության հետ դաշնակցած, ապահովեց հեղափոխության հաղթանակը և հաստատեց իր իշխանությունը: Հեղափոխության ետևից, բանվոր դասակարգի ետևից գնացին աշխատավոր ժողովրդի ամենալայն մասսաները, գիտության ու կուլտուրայի բոլոր առաջավոր մարդիկ: Ռեակցիայի զինված, քաղաքական և գաղափարական կատաղի դիմադրությանը, էկոնոմիկայի կազմալուծմանը և հակահեղափոխական սաբոտաժին, բուրժուական արյունալի տեռորին բանվոր դասակարգը հակադրեց մեծագույն կազմակերպվածությունն ու գիտակցական կարգապահությունը, համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը, հեղափոխական զգոնությունը: Ներքին հակահեղափոխության և օտարերկրյա ինտերվենտների դեմ մղվող պայքարի ամբողջ ընթացքը ցույց տվեց, որ հեղափոխությունը կարող է իր հաղթանակն ամրապնդել միայն այն դեպքում, եթե նա կարողանում է պաշտպանվել:

Սովետական իշխանության, որպես պրոլետարիատի դիկտատուրայի ձևերից մեկի, հաստատումն ու ամրապնդումը գործնականում ապահովեց ազատություն ու դեմոկրատիա աշխատավորների վիթխարի մեծամասնության համար՝ չտեսնված, անհնարին կապիտալիստական ամեն մի երկրի համար:

Մեր երկրի փորձով համոզիչ կերպով ցուցադրվեց լենինյան այն հիմնարար դրույթի ճշմարտացիությունը, որ միայն կոմունիստական կուսակցության կողմից առաջնորդվող բանվոր դասակարգն է ի վիճակի ղեկավարելու աշխատավորների ու շահագործվողների ամբողջ մասսային՝ կապիտալի լծի տապալման պայքարում, բուն տապալման ընթացքում, հաղթանակի ձեռքբերման և ամրապնդման պայքարում, նոր հասարակարգի ստեղծման գործում:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները հաջողությամբ կատարեցին սոցիալիստական հեղափոխության ամենագլխավոր և ամենաբարդ՝ ստեղծարար խնդիրը: Կենսագործվեց սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը, որն ընդգրկում է հասարակության կյանքի բոլոր հիմնական ոլորտները: Սովետական ժողովուրդը հարկադրված էր այդ խնդիրը լուծել անասելի դժվարին պայմաններում, գտնվելով թշնամական կապիտալիստական շրջապատման մեջ: Արտադրողական ուժերի և կուլտուրայի զարգացման ցածր մակարդակ, որ ժառանգություն էր մնացել ցարական Ռուսաստանից, մանր-ապրանքային գյուղատնտեսության գերակշռություն, համաշխարհային և քաղաքացիական պատերազմների, ինչպես նաև օտարերկրյա ինտերվենցիայի ավերիչ հետևանքներ. այսպիսի պայմաններում սկսվեց նոր հասարակարգի կառուցումը մեր երկրում:



Սոցիալիստական ինդուստրացումն ու գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը, ազգային հարցի արդարացի լուծումը պատմական շատ կարճ ժամկետում մեր հայրենիքը դարձրին սոցիալիստական հզոր տերություն:

Ֆաշիստական Գերմանիայի ոխտադրուժ հարձակումը ընդհատեց սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը: Մեր հայրենիքի պատմության մեջ եղած պատերազմներից ամենածանր, տևական պատերազմում սովետական ժողովուրդը կատարեց այնպիսի սխրագործություն, որին հավասարը դեռ չէր իմացել մարդկությունը: Նա կարողացավ ոչ միայն պաշտպանել իր ազատությունն ու անկախությունը, այլև վճռական ավանդ մուծեց եվրոպական և համաշխարհային քաղաքակրթությունը ֆաշիստական բարբարոսների կողմից ոչնչացվելուց փրկելու գործում:

Անօրինակ սխրանք կատարելով Հայրենական մեծ պատերազմի տարիներին, սովետական ժողովուրդը մասսայական հերոսություն ցուցադրեց նաև ավերված քաղաքների և գյուղերի, ֆաբրիկաների ու գործարանների վերականգնման խաղաղ աշխատանքում:

Վեց տասնամյակում Հոկտեմբերի հայրենիքի ձեռք բերած նվաճումները համոզիչ վկայությունն են այն բանի, որ սոցիալիզմը ապահովել է հասարակության կյանքի բոլոր կողմերի առաջադիմության՝ պատմության մեջ չտեսնված տեմպեր:

Անճանաչելիորեն փոխվել է երկրի ժողովրդական տնտեսությունը: Չնայած այն բանին, որ սովետական պետության գոյության 60 տարիներից մոտավորապես երկու տասնամյակը ընկել է մեր ժողովրդին պարտադրված պատերազմի տարիներին և դրանց հաջորդած տնտեսության վերականգնմանը, 1976 թվականին երկրի ազգային եկամուտը, նախահեղափոխական մակարդակի համեմատությամբ, ավելացավ 65 անգամ: Այժմ երկուսուկես օրում արդյունաբերությունն արտադրում է նույնքան արտադրանք, որքան արտադրվում էր ամբողջ 1913 թվականին:

Մինչև հեղափոխությունը մեր երկրին ընկնում էր համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 4 տոկոսից միայն մի փոքր ավելին, իսկ այսօր՝ նրա մեկ հինգերորդ մասը: Սովետական Միությունն ավելի շատ չուգուն, պողպատ, նավթ, երկաթի, մարգանեցի և քրոմի հանքաքար, ածուխ և կոքս, ցեմենտ, տրակտորներ (շարժիչների ընդհանուր կարողությամբ), ջերմաքարշեր և էլեկտրաքարշեր, բամբակ, վուշ, հանքային պարարտանյութեր և շատ այլ տեսակի արտադրանք է արտադրում, քան որևէ այլ պետություն:

Արմատական տեղաշարժեր են կատարվել արտադրողական ուժերի բնույթի, կառուցվածքի ու տեղաբաշխման մեջ: Սովետական իշխանության տարիներին հավասարվեց սովետական բոլոր հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակը: Խորունկ վերափոխումներ իրականացվեցին գյուղում: Ստեղծվեց սոցիալիստական խոշոր գյուղատնտեսական արտադրություն: Վ. Ի. Լենինը երազում էր այն մասին, որ գյուղին տրվեր հարյուր հազար տրակտոր: Այժմ Սովետական Միության գյուղատնտեսության մեջ աշխատում են 2,3 միլիոն տրակտոր, 680 հազար հացահատիկի կոմբայն և այլ բազմազան տեխնիկա: Գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը սովետական իշխանության տարիներին աճել է 4,4 անգամ: Կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական ամրապնդումը, գյուղատնտեսությունը աստիճանաբար ժամանակակից ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելը, գյուղի աշխատավորների կյանքի նյութական և կուլտուր-կենցաղային պայմանների անշեղ բարելավումը տանում են դեպի քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունների հաղթահարում:

Մեր երկրում մեկընդմիշտ ոչնչացված են կապիտալիզմին ներհատուկ այնպիսի սոցիալական խոցեր, ինչպիսիք են սովն ու աղքատությունը, գործազրկությունն ու անգրագիտությունը, սոցիալական և ազգային ճնշումը: Ար-

դյունաբերության և շինարարության բանվորների ռեալ եկամուտները, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել են 10, իսկ գյուղացիներինը՝ 14 անգամ: Իրականացվել է բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության վիթխարի ծրագիր: Վերակառուցվել է հին քաղաքների մեծամասնությունը, ստեղծվել են բազմաթիվ նորերը, փոխվել է գյուղի դեմքը: Ներկայումս երկրում յուրաքանչյուր երկու տարում շահագործման է հանձնվում ավելի շատ բնակարան, քան կար Ռուսաստանի քաղաքային բնակարանային ֆոնդում հեղափոխությունից առաջ: Սովետական յուրաքանչյուր մարդու տրամադրվում է անվճար բժշկական օգնություն, երաշխավորվում է նրա արդարացի սոցիալական ապահովությունը:

Մեր երկրում հաջողությամբ է լուծված պատմական հսկայական նշանակություն ունեցող սոցիալական խնդիրը՝ գործնականում ապահովված է կնոջ իսկական իրավահավասարություն: Սովետական կանայք մեծ դեր են խաղում հասարակական կյանքի բոլոր ոլորտներում: Սովետական ամբողջ ժողովուրդը հարգանքի անսահման տուրք է տալիս մորը, աշխատավոր կնոջը, կոմունիստական շինարարության ակտիվ մասնակից կնոջը:

Սոցիալիզմը աշխատավորների առջև լայն ճանապարհ բաց արեց դեպի գիտելիքները, հոգևոր կուլտուրայի հարստությունները: Նախահեղափոխական Ռուսաստանում չափահաս բնակչության մոտավորապես երեք քառորդը անգրագետ էր, իսկ հիմա ժողովրդական տնտեսության մեջ զբաղված աշխատողների ավելի քան երեք քառորդը բարձրագույն կամ միջնակարգ (լրիվ կամ թերի) կրթություն ունի: Ուսուցման բոլոր ձևերում ներկայումս ընդգրկված է ավելի քան 93 միլիոն մարդ: Հիմնականում ավարտված է անցումը ընդհանուր միջնակարգ կրթության: Հասարակական գիտակցության մեջ տիրապետում է գիտական մատերիալիստական աշխարհայացքը. ծաղկել են սովետական գրականությունն ու արվեստը, դրանք հսկայական ավանդ են ներդնում ամբողջ համաշխարհային կուլտուրայի մեջ:

Սոցիալիզմը անսահման հնարավորություններ է ստեղծել գիտության զարգացման համար, այն ի սպաս է դրել ժողովրդին: Երկրում աշխատում են մոտավորապես 1,3 միլիոն գիտական աշխատողներ՝ 108 անգամ շատ, քան 1913 թվականին: Սովետական գիտությունը մեծ նվաճումներ ունի հասարակական զարգացման պրոցեսների ուսումնասիրության գործում: Այն ամենաառաջավոր բնագծերն է դուրս եկել մաթեմատիկայի ու մեխանիկայի, քվանտային էլեկտրոնիկայի ու պինդ մարմնի ֆիզիկայի, միջուկային էներգետիկայի, քիմիայի ու կենսաբանության մի շարք ուղղություններում, տիեզերական հետազոտությունների ու երկրի մասին գիտությունների, գիտելիքների ուրիշ շատ բնագավառների գծով:

Սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքի կարևորագույն արդյունքը եղավ մեր երկրում կառուցված զարգացած սոցիալիզմի հասարակարգը:

Զարգացած սոցիալիստական հասարակարգը կոմունիստական ֆորմացիայի կազմավորման օրինաչափ փուլն է: Սոցիալիզմը, այդ փուլում զարգանալով արդեն սեփական հիմքի վրա, ավելի ու ավելի լրիվ է բացահայտում իր ստեղծագործական հնարավորությունները, իր խորապես հումանիստական էությունը: Զարգացած սոցիալիզմը բնութագրվում է գիտատեխնիկական հեղաշրջման նվաճումները տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ միացնելով, վճռական շրջադարձով դեպի էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ մեթոդները, արտադրության որակապես նոր մակարդակով ու մասշտաբներով, որոնք հնարավորություն են տալիս անմիջականորեն լուծել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրները, ապահովել աշխատավորների բարեկեցության անընդհատ աճը, կարևոր հաջողությունների հասնել կապիտալիզմի հետ տեղի ունեցող տնտեսական մրցության մեջ:

Զարգացած սոցիալիզմը նշանավորում է հասարակական հարաբերությունների ամբողջ սիստեմի հասունության բարձր աստիճան, որոնք հետզհետե վերաճում են կոմունիստական հարաբերությունների: Նրան հատուկ են աշ-



խատավորների գաղափարա-քաղաքական ու սոցիալական անխախտ համախմբվածությունը, նրանց անսահման նվիրվածությունը կոմունիստական կուսակցության ազնիվ իդեալներին, հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին: Զարգացած սոցիալիզմը այսօր սոցիալական առաջադիմության բարձրագույն նվաճումն է:

Զարգացած սոցիալիստական հասարակարգի կոնցեպցիան, որը մշակվել է ՍՄԿԿ-ի և եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոլեկտիվ ջանքերով, ստեղծագործական մեծ ավանդ է մարքսիզմ-լենինիզմի գանձարանում: Հենվելով զարգացած սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի վրա, ՍՄԿԿ-ն սահմանել է մոտակա տարիների և ավելի երկարատև պատմական հեռանկարի գործողությունների հստակ, ռեալիստական կուրսը, կոնկրետացրել է մեր ծրագրային նպատակների իրականացման ուղիները:

Մեկ տասնամյակ է անցել այն պահից, երբ մեր կուսակցությունը, ամբողջ սովետական ժողովուրդը հանդիսավորությամբ հանրագումարի բերեցին սովետական իշխանության առաջին կես դարի արդյունքները: Պատմության մասշտաբներով դա փոքր ժամանակահատված է, բայց այդ տասը տարիները կոմունիստական շինարարության հերոսական տարեգրության մեջ ակնառու տեղ կգրավեն երկրի կյանքում և միջազգային ասպարեզում հսկայական պատմական նշանակություն ունեցող իրադարձությունների հագեցվածությամբ, սոցիալ-տնտեսական զարգացման խոշոր մասշտաբայնությամբ ու կոմպլեքսայնությամբ, որը ներհատուկ է հասուն սոցիալիստական հասարակարգին:

Մեկ տասնամյակի ընթացքում փաստորեն կրկնապատկվեց մեր հայրենիքի նախորդ կես դարի ընթացքում ստեղծված տնտեսական պոտենցիալը: Գործարկվեցին մոտավորապես չորս հազար խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա վերակառուցվեցին հազարավոր գործող գործարաններ ու ֆաբրիկաներ: Լայն ճակատով ծավալվեց վիթխարի կոմպլեքսային ծրագրերի կենսագործումը, որոնք կերպարանափոխում են երկրի ընդարձակ տերիտորիաները: Դրանց թվում են Ռուսաստանի ոչ սևահողային գոտու, Արևմտյան Սիբիրի զարգացման, Բայկալ—Ամուր մայրուղու շրջանում Արևելյան Սիբիրի արդյունաբերական յուրացման ծրագրերը: Էականորեն բարձրացել է սովետական մարդկանց կենսամակարդակը, իրացվել է երկրի պատմության մեջ ամենալայն սոցիալական ծրագիրը: Իններորդ հնգամյակում նոր սոցիալական միջոցառումների կենսագործմանը հատկացվեցին այնքան միջոցներ, որքան հատկացվել էին նախընթաց երկու հնգամյակներում՝ միասին վերցրած:

Կուսակցությունը մշակել և հետևողականորեն կենսագործում է գիտականորեն հիմնավորված տնտեսական ստրատեգիա՝ ուղղված հիմնարար, երկարաժամկետ նպատակների, որոնց մեջ գերագույն նպատակը ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ վերելքն է: Արտադրության դինամիկ և համամասնական զարգացում, նրա արդյունավետության բարձրացում, աշխատանքի որակի համակողմանի բարելավում և աշխատանքի արտադրողականության արագ աճ՝ այսպիսին է մեր հայրենիքի հզորության հետագա ամրապնդման, սովետական մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման միակ ճշմարիտ ուղին:

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը երկրի տնտեսական հզորության հետագա մեծացումն է, արտադրական ֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, էկոնոմիկայի հիմքը կազմող ծանր արդյունաբերության հաշվեկշռված հաստատուն աճի ապահովումը:

Տնտեսական ու սոցիալական կարևորագույն նպատակներին է ծառայում կուսակցության ագրարային քաղաքականությունը, որով նախատեսվում է գյուղատնտեսական արտադրությունը դարձնել էկոնոմիկայի բարձր զարգացած հատված: Այդ քաղաքականությունը լենինյան կոոպերատիվ պլանի շարունակումն ու ստեղծագործական զարգացումն է նոր պայմաններում: Անցած տասը տարում գյուղատնտեսության զարգացման մեջ ներդրվել են գրեթե եր-

կու անգամ շատ միջոցներ, քան սովետական իշխանության նախընթաց բոլոր տարիներին: Կուսակցության ժամանակակից ագրարային կուրսի կենսագործումը նպաստեց հողագործության ու անասնապահության վերելքին: Չնայած իններորդ հնգամյակում խիստ աննպաստ կլիմայական պայմաններին, գյուղի աշխատավորները հասան այն բանին, որ վերջին երկու հնգամյակների ընթացքում հացահատիկի բերքատվությունն աճեց 1,4 անգամ, իսկ հանրային տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 58 տոկոսով: Տասներորդ հնգամյակում այդ ճյուղին հատկացվող կապիտալ ներդրումները կանցնեն 170 միլիարդ ռուբլուց և կկազմեն դրանց ընդհանուր ծավալի ավելի քան մեկ քառորդը:

Էկոնոմիկայի դինամիկ զարգացման հիման վրա նոր գծեր է ձեռք բերում սովետական հասարակության սոցիալական կերպարը: Ծարունակում են ջնջվել դասակարգային տարբերությունները, ամրապնդվում է հասարակության սոցիալական միատարրությունը: Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքը, որի մեջ առաջատար դերը խաղում է բանվոր դասակարգը, դարձել է մեր երկրում ստեղծված պատմական նոր ընդհանրության՝ սովետական ժողովրդի կայուն, անխախտ հիմքը:

Ամուր և միաձույլ են Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեծ ու հզոր միությունը կազմող բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական բարեկամությունն ու միասնությունը: Այդ միության կազմավորումն ու հաջող զարգացումը ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակն են, նրա իրոք ինտերնացիոնալիստական բնույթի վառ վկայությունը, սոցիալիզմի մեծ նվաճումը: Մեր ժողովուրդների բարեկամության ու համագործակցության նյութական կայուն հիմքն է դարձել ամբողջ երկրի սահմաններում կազմավորված միասնական տնտեսական օրգանիզմը: Ապահովվել է բոլոր ազգերի ու ազգությունների փաստական հավասարությունը հասարակության կյանքի բոլոր ոլորտներում, ծաղկել է ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, հաստատվել է աշխատավոր մարդկանց իսկական եղբայրություն՝ անկախ նրանց ազգությունից, եղբայրություն, որը զոդված է արմատական շահերի, նպատակների և մարքս-լենինյան գաղափարախոսության ընդհանրությամբ:

Ազգային քաղաքականության լենինյան սկզբունքների հետևողական իրականացումը տանում է դեպի մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի բոլոր ժողովուրդների հետագա համակողմանի մերձեցում: Սովետական Միությունը ազդողական օրինակ է տալիս մարդկային հասարակության զարգացման ամենաբարդ հարցերից մեկի հաջող լուծման համար:

Հեղափոխական ստեղծարար աշխատանքի ընթացքում և ազատության պայքարում, սոցիալիստական շինարարության առօրյայում կազմավորվում և կոփվում էր սովետական մարդը: Իր աշխատանքային սխրանքներով ու ստեղծագործական մեծագործություններով, Հայրենական մեծ պատերազմի ահեղ փորձություններում ցուցաբերած հերոսական տոկունությամբ ու արիությամբ, ամբողջ աշխարհում դասակարգային եղբայրներին ցույց տված իր անշահախնդիր աջակցությամբ սովետական մարդը ապացուցել է իր խորին նվիրվածությունը կոմունիզմի իդեալներին, իր բոցաշունչ հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը: Նա իր մեջ միավորում է գաղափարական համոզվածություն և հսկայական կենսական եռանդ, մշտական ձգտում դեպի գիտելիքների ու կուլտուրայի բարձունքները, կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության զգացում: Սովետական մարդը ջերմորեն սիրում է իր սոցիալիստական հայրենիքը: Նրա ամբողջ կյանքի բովանդակությունը դարձել է ոգեշունչ աշխատանքը հանուն կոմունիզմի:

Սովետական հասարակության զարգացման արդի փուլին բնորոշ է սոցիալիստական պետականության հետագա ամրապնդումն ու զարգացումը, սոցիալիստական դեմոկրատիզմի հետևողական ծավալումը:

Սոցիալիստական դեմոկրատիան արտահայտում և պաշտպանում է ժողովրդի շահերը, ծառայում է կոմունիզմի գործին: Այն տարածվում է ամբողջ հասարակական կյանքի՝ տնտեսական, քաղաքական ու հոգևոր կյանքի վրա, պայմաններ է ստեղծում անհատի բազմակողմանի ծաղկման համար: Սովետական ժողովուրդը երկրի իսկական և միակ տերն է: Երկրի քաղաքական, տնտեսական, սոցիալական ու կուլտուրական կյանքի բոլոր կարևորագույն հարցերը մեզանում քննարկվում և լուծվում են բանվորների, գյուղացիների, մտավորականության ամենալայն և անմիջական մասնակցությամբ: Մեր հասարակության դեմոկրատիզմը վառ մարմնավորում է գտնում աշխատավորների դեպուտատների սովետների՝ ժողովրդական իշխանության այդ ամենաներկայացուցչական մարմինների բազմազան գործունեության մեջ: Հասարակական կյանքում կարևոր տեղ են գրավում սովետական արհմիությունները, որոնք մեծ իրավունքներ ու հնարավորություններ ունեն սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում: Ակտիվ դեր է խաղում լենինյան կոմերիտմիությունը՝ սովետական երիտասարդության կազմակերպիչը, կուսակցության հուսալի օգնականն ու ռեզերվը:

Սոցիալիստական դեմոկրատիան իրավունքների և պարտականությունների, իսկական ազատության ու քաղաքացիական պատասխանատվության միասնություն է, հասարակության, կոլեկտիվի ու անհատի շահերի ներդաշնակ զուգորդում: Սովետական կարգերի խոր դեմոկրատիզմի համոզիչ արտահայտությունն են կոմունիստական կուսակցության ներքին ու արտաքին լենինյան քաղաքականությանը ցույց տրվող համաժողովրդական պաշտպանությունը, ժողովրդական զանգվածների քաղաքական ու աշխատանքային հարաճուն ակտիվությունը, սոցիալիստական մրցության հսկայական թափը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման ծավալումը:

Կուսակցությունը անդուլ աշխատանք է տանում մեր համաժողովրդական պետության դեմոկրատական հիմքերի հետագա կատարելագործման համար, որը պատմական նոր պայմաններում շարունակում է պրոլետարիատի դիկտատուրայի պետության ստեղծարար մեծ առաքելությունը, հասարակության բոլոր գործերի կառավարմանն աշխատավորների ավելի ու ավելի լայն մասնակցությունն ապահովելու համար:

Սովետական ժողովրդի հերոսական ամբողջ պատմությունը, նրա մարտական և աշխատանքային հաղթանակները, նրա ակնառու մեծագործությունները անխզելիորեն կապված են կոմունիստական կուսակցության՝ որպես մեր հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, գործունեության հետ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը հաղթանակեց, որովհետև այն գլխավորում էր մեծ Լենինի ստեղծած, արդիականության ամենաառաջավոր դասակարգի՝ բանվոր դասակարգի, հեղափոխական եռանդը մարմնավորած նոր տիպի կուսակցությունը: Նա պաշտպանեց իր գլխավոր կուրսը և հետևողականորեն այն իրականացրեց տրոցկիզմի, աջ և «ձախ» օպորտունիզմի, նացիոնալ-ուկլոնիստների դեմ մղված սկզբունքային պայքարում, ապահովեց կուսակցական շարքերի լենինյան միասնությունը: Օգտագործելով դասակարգային պայքարի միջոցների բազմահարուստ զինանոցը, հենվելով հասարակական զարգացման խորապես ճանաչված օրենքների վրա, բանվոր դասակարգի պատմական նախաձեռնության և մասսաների հեղափոխական ստեղծագործության վրա, ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական ուսմունքը, մեր կուսակցությունը գտնըվեց դարաշրջանի մեծ խնդիրների բարձրության վրա, նա պատվով է առաջ տանում Հոկտեմբերի հաղթական դրոշը:

Պատմական փորձը վկայում է, որ բանվոր դասակարգի հեղափոխական կուսակցությունը այն կուսակցությունն է, որն առաջնորդվում է սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար մղվող պայքարում, նոր հասարակարգի կառուցման ասպարեզում միակ ճիշտ կողմնորոշումը տվող մարքսլենինյան տեսությամբ: Դա մասսաների հետ սերտորեն կապված կուսակցու-

թյունն է, որի ամբողջ գործունեությունը, բոլոր ձգտումները նպատակամղված են աշխատավոր մարդու բարօրությանը: Դա այն կուսակցությունն է, որ կառուցվում է դեմոկրատական ցենտրալիզմի, բարձր գիտակցականության և բոլորի համար միասնական կարգապահության հիման վրա: Դա պրոլետարական ինտերնացիոնալիզմի կուսակցություն է: Այդպիսի կուսակցություն եղել է, է և կլինի Լենինի կուսակցությունը, բանվոր դասակարգի կուսակցությունը, ամբողջ սովետական ժողովրդի մարտական ավանգարդը:

Ներկա ժամանակաշրջանը բնորոշվում է հասարակության մեջ կուսակցության ղեկավար դերի հետագա բարձրացումով, նրա տեսական, քաղաքական և կազմակերպչական գործունեության ուժեղացումով: Հսկայական նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի արդյունավետ, ստեղծագործական աշխատանքը, որին գլխավորում է արդիականության քաղաքական ու պետական ականավոր գործիչ, հավատարիմ մարքսիստ-լենինյան, կոմունիզմի գործի անխոնջ մարտիկ, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը:

ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է նվիրում կուսակցական կյանքի լենինյան նորմաների և ղեկավարման սկզբունքների ամրապնդմանն ու զարգացմանը, ներկուսակցական դեմոկրատիայի խորացմանը, կուսակցության յուրաքանչյուր անդամի նկատմամբ պահանջկոտության բարձրացմանը և իր որակական կազմի բարելավմանը, հասարակության կուսակցական ղեկավարման բոլոր կողմերի կատարելագործմանը: Այդ տեսակետից սկզբունքային նշանակություն ունեցան կուսակցության XX համագումարի, Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումի, ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարների որոշումները: Կուսակցության մեջ հաստատվեց աշխատանքի իսկական լենինյան ոճ՝ գիտական, ստեղծագործական ոճ, որին խորթ է սուբյեկտիվիզմը, որը ենթադրում է բարձր պահանջկոտություն, բացառում ինքնագոհությունը, հակադրվում բյուրոկրատիզմի և ֆորմալիզմի բոլոր դրսևորումներին: Մեր 16-միլիոնանոց կուսակցությունը դեպի Հոկտեմբերի 60-ամյակն է գնում որպես համախոհ կոմունիստների մարտական միություն, որոնք սերտորեն համախմբված են իրենց լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը:

Վերջին վեց տասնամյակում հսկայական փոփոխություններ են կատարվել ոչ միայն մեր երկրում, այլև ամբողջ աշխարհում: Այդ խոր, համապարփակ սոցիալական փոփոխությունների սկիզբը դրեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Նա հեղափոխական հզոր ազդակներ տվեց միջազգային բանվորական շարժման բոլոր ջոկատներին, նոր հնարավորություններ ու հեռանկարներ բացեց գաղութային և կիսագաղութային երկրներում ազգային-ազատագրական պայքարի ծավալման համար: Արդի դարաշրջանի ամբողջ հասարակական կյանքի կենտրոնում վերջնականապես ու անդառնալիորեն կանգնեց բանվոր դասակարգը: Մեծ Հոկտեմբերի ազդեցությամբ բոլոր մայրցամաքներում սկսվեց կազմակերպված պրոլետարական ավանգարդի՝ կոմունիստական կուսակցությունների ձևավորումը:

Երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում ֆաշիզմի ու ճապոնական միլիտարիզմի ջախջախումը, Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում սոցիալիստական հեղափոխությունների հաղթանակը արագացրին համաշխարհային զարգացումը: Մեծ Հոկտեմբերի սկզբնավորած հեղափոխական պրոցեսը հասավ որակապես նոր բնագծի. ձևավորվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը: Արմատապես փոխվեց ուժերի հարաբերակցությունը միջազգային ասպարեզում: Համաշխարհային սոցիալիզմի հզորությունը և օրինակը բազմապատկեցին միջազգային բանվոր դասակարգի հեղափոխական հնարավորությունները, նպաստելով ամբողջ ազատագրական շարժման առաջընթացին:

Կուբայի հաղթական հեղափոխությունը հանգեցրեց արևմտյան կիսագնդում առաջին սոցիալիստական պետության կազմավորմանը: Վիետնամական ժողովրդի պատմական հաղթանակի և երկրի վերամիավորման ավարտման շնորհիվ Վիետնամի Սոցիալիստական Հանրապետությունը դարձավ Ասիայի



խաղաղության և առաջադիմության կարևոր գործոն: Լաոսում հայրենասիրական ուժերի հաղթանակի, մարքս-լենինյան ժողովրդա-հեղափոխական կուսակցության երկրի ղեկավարման գլուխ անցնելու շնորհիվ ընդլայնվում է սոցիալիստական երկրների ընտանիքը:

Համաշխարհային սոցիալիզմի պատմական փորձը մարքսիզմ-լենինիզմի գանձարանը հարստացրեց նոր հետևություններով ու դրույթներով, ընդարձակեց հեղափոխական տեսության և պրակտիկայի հորիզոնները: Նա անհերքելիորեն ապացուցեց սոցիալիստական հեղափոխության և նոր հասարակարգի կառուցման այն հիմնական օրենքների համընդհանուր նշանակությունը, որոնք հայտնագործվել են մարքս-լենինյան գիտության կողմից և առաջին անգամ մարմնավորվել Հոկտեմբերի պրակտիկայում: Նա հաստատեց այդ օրենքների ստեղծագործական կիրառման անհրաժեշտությունը, հաշվի առնելով առանձին երկրների կոնկրետ պայմաններն ու առանձնահատկությունները:

Վերջին տարիներս է՛լ ավելի ամրապնդվեց սոցիալիստական երկրների եղբայրական ժողովուրդների համաշխարհային համագործակցությունը՝ նոր տիպի միջազգային դաշինքը: Սոցիալիստական պետությունները, որոնք միավորված են կարգերի ընդհանրությամբ, խաղաղության, սոցիալիզմի, դեմոկրատիայի և ազգային անկախության գործին նվիրվածությամբ, կամավոր կերպով զարգացնում են իրենց բազմակողմանի համագործակցությունը՝ մարքսիզմ-լենինիզմի և ինտերնացիոնալ համերաշխության սկզբունքների, յուրաքանչյուր պետության իրավահավասարության և սուվերենության հարգման, նրանց ներքին գործերին չմիջամտելու, ընկերական փոխօգնության հիման վրա: Ամրապնդվել են եղբայրական երկրների գաղափարական միասնությունն ու քաղաքական համախմբվածությունը: Ստեղծվել է և հաջողությամբ գործում է նրանց արտաքին քաղաքական փոխգործողության մեխանիզմը: Ինտենսիվորեն զարգանում է տնտեսական համագործակցությունը: Մշակվել և կենսագործվում է ՏՓԽ-ի անդամ պետությունների սոցիալիստական տնտեսական ինտեգրացման երկարաժամկետ կոմպլեքսային ծրագիրը: Ընդլայնվում են գաղափարական և կուլտուրական կապերը: Սոցիալիստական երկրների համախմբվածության ամրապնդումը, նրանց մարքս-լենինյան կուսակցությունների եղբայրական բարեկամության խորացումն զգալիորեն մեծացնում են սոցիալիզմի միացյալ հզորությունն ու ազդեցությունը միջազգային իրադարձությունների ընթացքի վրա: Ներկայումս սոցիալիստական երկրների համագործակցությունը դարձել է աշխարհի ամենադինամիկ տնտեսական ուժը, համաշխարհային քաղաքականության առաջատար գործոնը:

Սոցիալիստական երկրների հաջողությունները համոզիչ կերպով վկայում են, որ ապագան պատկանում է սոցիալիզմին: Ընդհակառակն, կապիտալիզմը ապագայից զուրկ հասարակարգ է: Կապիտալիզմը նշանակում է աշխատավորների շահագործում, սոցիալ-քաղաքական և հոգևոր ճնշում, գործազրկություն և նեոգաղութատիրություն: Նա ծնում է հասարակության բարոյական խոր ճգնաժամ, հոգևոր անկում, կյանքի նկատմամբ սպառողական վերաբերմունք, բռնության պաշտամունք, որոնք ձևազեղծում են անհատին:

Իմպերիալիզմն է մեղավոր սպառազինությունների անզուսպ մրցավազքի համար, որը ստեղծում է ջերմամիջուկային աղետի սպառնալիք, նա է մեղավոր շրջակա միջավայրի նկատմամբ գիշատչական վերաբերմունքի համար:

Արդի պայմաններում, երբ էապես խորացել է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը, սրվել են նրա անհաշտելի հակասությունները, գնալով ավելի լայն թափ է ստանում պայքարն ընդդեմ մոնոպոլիաների շահագործման, բռնացման, հանուն դեմոկրատիայի և սոցիալիզմի: Այդ պայքարի ավանգարդում ընթանում է պրոլետարիատը: Վերջին տասնամյակներում ամենաբարձր մակարդակին է հասել գործադուլային պայքարը, որն ուղղված է շահագործման, գործազրկության, թանկության աճի, տնտեսական ճգնաժամի բեռը աշխատավորների ուսերին դնելու փորձերի դեմ: Ուժեղանում է հակահարվածը խոշոր կապիտալի ռեակցիոն քաղաքականությանը: Տապալվեցին ֆաշիստական

բռնապետությունները Պորտուգալիայում և Հունաստանում: Կրախի ենթարկվեց ֆրանկոյական վարչակարգը Իսպանիայում:

Ուժեղանում է ձգտումը դեպի բանվորական շարժման միասնությունը, դեպի ձախ դեմոկրատական ուժերի միավորումը: Դեպի ձախ տեղաշարժ է կատարվում արհմիություններում: Մեծանում են կապիտալի երկրների կոմունիստական կուսակցությունների թվական կազմը, նրանց հեղինակությունն ու ազդեցությունը մասսաների մեջ:

Ազգային-ազատագրական շարժման հզոր ճնշման տակ փլուզվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմը: Առաջացան տասնյակ նոր անկախ պետություններ: Նրանց դերը համաշխարհային զարգացման մեջ զգալիորեն մեծանում է: Իմպերիալիզմը չի հաշտվել իր տիրապետության կորստյան հետ, նա հույս ունի նեոգաղութատիրության միջոցով շարունակել այդ երկրների շահագործումը, վերահսկել նրանց տնտեսական և քաղաքական կյանքը: Սակայն գաղութարարների տիրապետությունից ազատագրված երկրները ամրապնդում են իրենց անկախությունը, արագացնում տնտեսական, տեխնիկական և կուլտուրական առաջընթացը: Ամրապնդվում են հետևողական հակաիմպերիալիստական դիրքերից հանդես եկող դեմոկրատական և հեղափոխական ուժերը, որոնք ձգտում են արմատական հասարակական վերափոխումների: Առաջադիմական խոր տեղաշարժեր են կատարվում սոցիալիստական կողմնորոշում ունեցող արաբական, աֆրիկյան և ասիական երկրների հասարակական կյանքում:

Սովետական Միությունը, մյուս սոցիալիստական պետությունները համակողմանի աջակցություն են ցույց տալիս զարգացող երկրներին, որոնք պայքարում են իրենց օրինական ձգտումների իրականացման համար, իմպերիալիստական շահագործումից լրիվ ազատվելու համար, իրենց բախտը ինքնուրույն տնօրինելու իրավունքի համար: Վերջին ժամանակներս հեղափոխական շարժման խոշոր նվաճում եղավ Անգոլայի հայրենասերների հաղթանակը, որոնք հենվում էին ՍՍՀՄ-ի և Կուբայի, սոցիալիստական համագործակցության բոլոր երկրների, աֆրիկյան մայր ցամաքի և ամբողջ աշխարհի առաջադեմ ուժերի համերաշխության ու եղբայրական օգնության վրա: Այդ հաղթանակը նոր ուժով խթան եղավ Հարավային Աֆրիկայի և Ռոդեզիայի ռասիստական վարչակարգերի դեմ աֆրիկյան ժողովուրդների մղած պայքարի համար:

Պատմությունը անհերքելիորեն վկայում է արդիականության երեք հիմնական հեղափոխական ուժերի՝ համաշխարհային սոցիալիզմի, միջազգային պրոլետարիատի և ազգային-ազատագրական շարժման դաշինքի անհաղթահարելի հզորությունը:

Աշխարհում ուժերի հարաբերակցության մեջ կատարված արմատական փոփոխությունների հիման վրա տեղի է ունենում միջազգային հարաբերությունների ամբողջ սիստեմի խոր վերակառուցում:

Վերջին տարիներս հաջողվեց դրական շրջադարձի հասնել միջազգային հարաբերությունների զարգացման մեջ, շրջադարձ կատարել «սառը պատերազմից» դեպի լարվածության թուլացում, դեպի միջազգային կյանքի պրակտիկայում տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատում: Ետ մղվեց համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքը: Է՛լ ավելի բարենպաստ միջազգային պայմաններ ապահովվեցին սոցիալիստական և կոմունիստական խաղաղ շինարարության համար, ժողովուրդների սոցիալական առաջադիմության պայքարի զարգացման համար: Ավելի քան երեսուն տարի է, ինչ սովետական ժողովուրդն աշխատում է խաղաղության պայմաններում: ՍՍՀՄ-ի միջազգային դրությունն ամուր է, ինչպես երբեք: Է՛լ ավելի է բարձրացել Հոկտեմբերի հայրենիքի, սոցիալիզմի մյուս երկրների միջազգային հեղինակությունը:

Խաղաղության ամրապնդման ուղղությամբ հատկապես շոշափելի փոփոխություններ կատարվեցին Եվրոպայում, որին նպաստեցին Եվրոպայի անվտանգության ու համագործակցության պատմական խորհրդակցության հրավիրումը և նրա հաջողությունը: Ընդհանուր խաղաղության շահերին համապա-



տասխանում են ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերություններում դեպի լավը կատարված շրջադարձը, Ֆրանսիայի, ԳՖՀ-ի, Իտալիայի, Մեծ Բրիտանիայի և կապիտալիստական այլ պետությունների հետ խաղաղ համագործակցության զարգացումը:

Մոլորակի քաղաքական կլիմայի առողջացման գործում ձեռք բերված հաջողությունները հնարավոր եղան նախ և առաջ Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների հարաճուն հզորության շնորհիվ, նրանց հետևողական խաղաղասիրական քաղաքականության, բոլոր մայրցամաքներում խաղաղության օգտին ժողովրդական լայն զանգվածների հաստատակամ պայքարի շնորհիվ: Կապիտալիստական պետությունների կառավարող շրջանները այժմ ստիպված են հաշվի առնել, որ բոլորովին անհեռանկար և անիմաստ են սոցիալիզմի նկատմամբ ռազմական հաղթանակ տանելու հաշիվները: Ավելի ու ավելի ռեալիստական միտումներ են հաստատվում մի շարք կապիտալիստական երկրների արտաքին քաղաքականության մեջ, և նրանց ղեկավարները ընդունում են տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության անհրաժեշտությունը:

Լարվածության թուլացման քաղաքականության զարգացման ու խորացման գործում հսկայական կոնստրուկտիվ, մոբիլիզացնող դեր է պատկանում ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագրին և նրա օրգանական շարունակությանը՝ խաղաղության ու միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության ու անկախության համար մղվող հետագա պայքարի ծրագրին, որն առաջ քաշեց լենինյան կուսակցության XXV համագումարը: Սովետական Միության խաղաղասիրական նախաձեռնությունները ստացան և ստանում են բոլոր երկրների աշխատավորների պաշտպանությունը, արտահայտում են ժողովուրդների կենսական շահերն ու իղձերը:

Կուսակցությունը միևնույն ժամանակ հաշվի է առնում, որ համաշխարհային զարգացման այժմյան փուլը բնութագրվում է միջազգային ասպարեզում դասակարգային պայքարի ուժեղացումով: Ագրեսիվ իմպերիալիստական ուժերը խթանում են սպառազինությունների մրցավազքը, որը լուրջ սպառնալիք է ներկայացնում ժողովուրդների խաղաղության ու անվտանգության համար, փորձում են ամեն կերպ խանգարել լարվածության թուլացմանը: Հետադիմական շրջանները կազմակերպում են Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների դեմ ուղղված գաղափարական դիվերսիաներ, զրպարտչական հակասովետական, հակակոմունիստական կամպանիաներ, փորձում են միջամտել սոցիալիստական և մյուս երկրների ներքին գործերին՝ բորբոքելով հակակոմունիստական հիստերիա, իմպերիալիստական ռեակցիան հալածանքների ու տեռորի է դիմում դեմոկրատական, առաջադիմական շարժումների դեմ:

Վճռական հակահարված տալով խաղաղության ու սոցիալիզմի հակառակորդների բոլոր մեքենայություններին, Սովետական Միությունը և մյուս եղբայրական սոցիալիստական երկրները ձգտում են է՛լ ավելի զարգացնել միջազգային իրադրության մեջ խաղաղության ու սոցիալական առաջադիմության օգտին կատարվող բարենպաստ վերափոխումները, լարվածության թուլացումը դարձնել շարունակական, ավելի ու ավելի կենսունակ, համապարփակ ու անշրջելի, բոլոր մայրցամաքներն ընդգրկող պրոցես՝ անցնելու պետությունների հաստատուն բեղմնավոր խաղաղ համագործակցության, գործնական հաջողությունների հասնելու զինաթափման և առաջին հերթին միջուկային զինաթափման բնագավառում: Զինաթափումը, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «սոցիալիզմի իդեալն է»:

Մեր այս դիրքավորումը մոտիկ ու հասկանալի է բոլոր աշխատավոր մարդկանց: Ահա թե ինչու առաջավոր մարդկությունը այնպես բարձր է գնահատում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի քաղբյուրոյի ազնիվ, մարդասիրական նպատակներով տոգորված արտաքին քաղաքական գործունեությունը, կրքոտ ու ոգեշունչ պայքարը հանուն ժողովուրդների խաղա-

դության ու անվտանգության ամրապնդման, պայքար, որ անդուլ կերպով մղում է Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը:

Ամրապնդվում են համաշխարհային կոմունիստական շարժման՝ արդիականության ամենաառաջադիմական և ազդեցիկ քաղաքական ուժի դիրքերը: Կոմունիստական շարժման հետագա համախմբման ճանապարհին, իմպերիալիզմի դեմ խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի ուժեղացման ճանապարհին խոշոր ուղենիշեր եղան կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունը (Մոսկվա, 1969 թ.), Լատինական Ամերիկայի ու Կարիբյան ավազանի երկրների կոմունիստական կուսակցությունների խորհրդակցությունը (Հավանա, 1975 թ.), Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոնֆերանսը (Բեռլին, 1976 թ.), ուրիշ շրջանների կոմունիստների համաժողովները: Դրանք վառ կերպով ցուցադրեցին բոլոր երկրների կոմունիստների ինտերնացիոնալ համերաշխության անսպառ կենսական ուժը: ՍՄԿԿ-ն մյուս եղբայրական կուսակցությունների հետ միասին այսուհետև էլ ակտիվորեն կպայքարի մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքային հիման վրա համաշխարհային կոմունիստական շարժման միասնության ամրապնդման համար:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը կոմունիստների գործունեության կարևորագույն, կյանքում ստուգված սկզբունքն է: Դրանով է տոգորված գիտական կոմունիզմի տեսության ու պրակտիկայի ողջ բովանդակությունը: Ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո է նվաճվել Հոկտեմբերի հաղթանակը, ամրապնդվել են առաջին սոցիալիստական պետության դիրքերը, առաջացել է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ամրապնդվում և զարգանում է սոցիալիստական պետությունների համագործակցությունը, աճում և համախմբվում է միջազգային կոմունիստական, բանվորական շարժումը: ՍՄԿԿ-ի ելակետը միշտ եղել և մնում են սոցիալիզմի, ամբողջ հեղափոխական շարժման արմատական ինտերնացիոնալ շահերը:

Ընդհանուր նպատակների համար մղվող պայքարում բոլոր երկրների բանվոր դասակարգի, կոմունիստների համերաշխությունը, ազգային ազատագրության և սոցիալական առաջադիմության համար ժողովուրդների կողմից մղվող պայքարին նրանց ցույց տված աջակցությունը, իրավահավասար, անկախ եղբայրական կուսակցությունների կամավոր համագործակցությունը, իրենց քաղաքականության մեջ աշխատավորների ազգային ու ինտերնացիոնալ շահերի օրգանական զուգորդումը՝ հենց դա էլ պրոլետարական ինտերնացիոնալիզմն է գործողության մեջ: Այն եղել և մնում է կոմունիստական ու բանվորական շարժման հուժկու, փորձված զենքը:

Համաշխարհային հեղափոխական շարժման ողջ զարգացումը հաստատում է, որ մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ընդհանուր սկզբունքների պահպանումը յուրաքանչյուր կոմկուսի դիրքերի ամրապնդման, նրա հեղինակության ու ազդեցության աճի կարևորագույն նախադրյալն է, սեփական երկրի բանվոր դասակարգի հանդեպ իր պարտականությունների և իր ինտերնացիոնալ պարտքի հաջող կատարման նախադրյալը: Կոմկուսների իսկական ինքնուրույնության և անկախության հաստատումը, նրանց արդյունավետ, սկզբունքային հեղափոխական քաղաքականությունը ենթադրում է եղբայրական համագործակցության, փոխօգնության ու աջակցության հարաբերությունների զարգացում ամբողջ կոմունիստական ու բանվորական շարժման շրջանակներում, գործուն համերաշխություն ռեալ սոցիալիզմի՝ հակաիմպերիալիստական գլխավոր ուժի, համաշխարհային հեղափոխական պրոցեսի հուսալի հենարանի հետ:

Հոկտեմբերյան հեղափոխությունը մի այնպիսի սոցիալ-քաղաքական իրադարձություն է, որի վեհությունն ավելի ու ավելի խոր ու ցայտուն կերպով է բացահայտվում հասարակական առաջընթացի ուղիով մարդկության յուրաքանչյուր նոր քայլի հետ:



Հոկտեմբերի հաղթանակի, ռեալ սոցիալիզմի փորձի համաշխարհային պատմական նշանակությունն այն է, որ դրանք տվեցին աշխատավորության շահերի օգտին հասարակության ամենաարդարացի կազմակերպման օրինակ:

Սոցիալիզմը ռեալ հումանիզմի հասարակարգ է: Նրա գլխավոր արժեքը աշխատավոր մարդն է: Ամեն ինչ մարդու բարօրության համար, հանուն մարդու՝ այսպիսին է նոր, սոցիալիստական ապրելակերպի խորագույն իմաստը:

Սոցիալիզմն ազատագրված աշխատանքի, իսկական դեմոկրատիայի, անհատի իսկական ազատության, ամենաառաջավոր գիտության ու կուլտուրայի հասարակարգ է:

Այն վերացնում է ճնշման բոլոր ձևերը, ապահովվում է աշխատանքի, կրթության ու հանգստի իրավունք, աշխատավորների լրիվ զբաղվածություն, ռեալ հնարավորություններ է ստեղծում հասարակության բոլոր անդամների համակողմանի ստեղծագործական աճի համար:

Սոցիալիզմը սոցիալական լավատեսության հասարակարգ է: Նա աշխատավոր մարդուն տալիս է հաստատ վստահություն վաղվա օրվա, իր երեխաների երջանիկ ապագայի, ապահովված ծերության նկատմամբ:

Սոցիալիզմը ժողովուրդներին բերում է նոր, իրավահավասար հարաբերություններ, փոխշահավետ համագործակցություն և խաղաղություն: Նա գաղութատիրության և նեոգաղութատիրության հետևանքներից տառապող զարգացող երկրների ժողովուրդների առջև բացում է պատմական կարճ ժամանակամիջոցում տնտեսական հետամնացությունը վերացնելու հեռանկար, սոցիալական ազատագրման և համակողմանի առաջադիմության հեռանկար:

Տնտեսական, քաղաքական և հոգևոր կյանքի սոցիալիստական կազմակերպումը ցույց տվեց, որ միայն սոցիալիզմն է ուղի բացում արդիականության ամենակարևոր և անհետաձգելի համամարդկային պրոբլեմների լուծման համար: Միայն նա է ընդունակ մարդկությանը ընդմիշտ ազատելու մասսայական ոչնչացման զենքի գործադրմամբ համընդհանուր կործանարար պատերազմի սպառնալիքից, պահպանելու և բարելավելու բնական միջավայրը:

Բոլոր երկրների աշխատավորների ամենապայծառ հույսերը կապված են սոցիալիզմի հետ: Դրանում է Հոկտեմբերի օրինակի, Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության բոլոր երկրների հաջողությունների ուժը:

Այժմ սովետական հասարակության ամբողջ զարգացումը ընթանում է ՍՄԿԿ XXV համագումարի գաղափարների հարանուն ներգործությամբ: Դա կուսակցության և ժողովրդի անխախտ միասնության, ոգևորիչ հեռանկարների և նպատակասլաց գործարարության համագումար է: Համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի դիրքերից տվեց կուսակցության գործունեության և զարգացած սոցիալիզմի հասարակության կյանքի բոլոր հիմնական կողմերի խոր վերլուծությունը, գիտականորեն ընդհանրացրեց վիթխարի գործնական փորձը, առաջադրեց ապագայի խնդիրները, բացահայտեց հասարակական զարգացման ինչպես ներքին, այնպես էլ միջազգային բնույթի արմատական պրոբլեմները:

XXV համագումարի նախատեսած կուսակցության քաղաքական կուրսն ապահովում է ՍՍՀՄ-ի տնտեսական և պաշտպանական հզորության անընդհատ ամրապնդումն ու զարգացումը, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործումը, մեր հայրենիքի հետագա առաջընթացը դեպի կոմունիզմ: Համագումարի ցուցումներն իրենց կոնկրետ մարմնավորումը գտան տասներորդ հնգամյակի՝ արդյունավետության և որակի, հսկայական մասշտաբների և մեծ հնարավորությունների հնգամյակի պլանի մեջ: XXV համագումարի հեղափոխական ստեղծագործական ոգին, նրա գաղափարները ապրում են մեր կուսակցության, մեր ժողովրդի ամենօրյա գործե-

բորդ հնգամյակի հաջող կատարման, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության հետագա աճի ապահովման, տեխնիկական առաջադիմության արագացման, աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման, ժողովրդի նյութական բարեկեցության և նրա կյանքի կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման:

Հավանություն տալ արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի ձեռնարկությունների առաջավոր կոլեկտիվների նախաձեռնությանը՝ սոցիալիստական մրցություն ծավալելու, փառապանծ հոբելյանը արժանավայել դիմավորելու, հնգամյակի երկու տարիների առաջադրանքները մինչև 1977 թվականի նոյեմբերի 7-ը կատարելու, արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու համար:

Ամբողջ կազմակերպական-քաղաքական և գաղափարա-դաստիարակչական աշխատանքում անհրաժեշտ է՝

— խորապես ու համակողմանիորեն բացահայտել Հոկտեմբերյան հեղափոխության համաշխարհային պատմական նշանակությունը, այն դրույթներն ու հետևությունները, որոնք տրված են Վ. Ի. Լենինի աշխատություններում, **ՍՄԿԿ**-ի, միջազգային կոմունիստական շարժման փաստաթղթերում, **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի և կուսակցության մյուս ղեկավարների զեկուցումներում ու ելույթներում.

— լայնորեն լուսաբանել կոմունիստական կուսակցության ղեկավար, հեղափոխական-վերակերտիչ գործունեությունը աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման և ամրապնդման գործում, ժողովրդական մասսաների վճռական դերը հեղափոխության և նոր հասարակարգի կառուցման գործում, մեր երիտասարդությանը դաստիարակել **ՍՄԿԿ**-ի, բանվոր դասակարգի, ամբողջ սովետական ժողովրդի հեղափոխական, աշխատանքային և մարտական փառավոր ավանդույթներով.

— վառ կերպով ցույց տալ սովետական մարդկանց աշխատանքային և քաղաքական ակտիվությունը կոմունիստական շինարարության հոյակապ պլանների կենսագործման, կուսակցության XXV համագումարի պատմական որոշումների կատարման պայքարում, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անձնվեր աշխատանքի սոցիալական հսկայական նշանակությունը, ըստ ամենայնի պրոպագանդել կուսակցության տնտեսական ստրատեգիան և սոցիալական քաղաքականությունը: Սկզբունքային, գործարար քննադատության ենթարկել եղած թերությունները, եռանդուն կերպով ի հայտ բերել և օգտագործել ռեզերվները, ավելի լայնորեն տարածել առաջավոր փորձը.

— համոզիչ կերպով բացահայտել էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման, ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացման գործում **ՍՍՀՄ**-ի, սոցիալիստական համագործակցության երկրների ակնառու նվաճումները, կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի արմատական առավելությունները, աշխարհի ժողովուրդներին հասցնել ճշմարտությունը սոցիալիզմի մասին.

— փաստարկված քննադատության ենթարկել բուրժուական գաղափարախոսությունը, «աջ» և «ձախ» ռևիզիոնիստական կոնցեպցիաները, մերկացնել պատմության զանազան տեսակի կեղծարարներին, որոնք փորձում են նսեմացնել Հոկտեմբերյան հեղափոխության, մեր կուսակցության և ժողովրդի անցած ուղու միջազգային նշանակությունը, վճռական հակահարված տալ հակակոմունիզմին և հակասովետիզմին, ամեն գույնի օպորտունիզմին.

— համակողմանիորեն լուսաբանել **ՍՄԿԿ**-ի գործունեությունը՝ ուղղված սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացմանն ու ամրապնդմանը, ի պաշտպանություն ազգային-ազատագրական շարժման, նրա պայքարը խաղաղության, ժողովուրդների համագործակցության և անվտանգության ամրա-



պնդման, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման համար: Բացահայտել մեր կուսակցության դերը մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա կոմունիստական շարժման միասնության համար մղվող պայքարում:

Հանձնարարել միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսկազմակերպություններին, **ՀԱՄԿԽ**-ին, **ՀամԼԿԵՄ** Կենտկոմին, սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությանը, միավորումների և ռազմաուսումնական հաստատությունների քաղմարմիններին՝ մշակել և իրականացնել Հոկտեմբերի 60-ամյակի նախապատրաստման ու անցկացման կազմակերպական և ագիտացիոն-պրոպագանդիստական միջոցառումներ: Ընդ որում, լայնորեն օգտագործել Հոկտեմբերի 50-ամյակի, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի և **ՍՍՀՄ**-ի կազմավորման 50-ամյակի տոնակատարության ժամանակաշրջանում կուտակած փորձը:

**ՍՄԿԿ** Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին, հասարակական գիտությունների ակադեմիային և բարձրագույն կուսակցական դպրոցին հանձնարարված է, **ՍՍՀՄ** գիտությունների ակադեմիայի հետ համատեղ, անցկացնել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակին նվիրված գիտատեսական կոնֆերանս:

**ՍՍՀՄ** կուլտուրայի մինիստրությանը, **ՍՍՀՄ** բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, **ՍՍՀՄ** լուսավորության մինիստրությանը, **ՍՍՀՄ** հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեին, **ՍՍՀՄ** հրատպետկոմին, **ՍՍՀՄ** պետկինոյին, **ՍՍՀՄ** Մինիստրների սովետի գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեին, **ՍՍՀՄ** Մինիստրների սովետի պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեին, **ՍՍՀՄ** Մինիստրների սովետին առընթեր ֆիզիկական կուլտուրայի և սպորտի կոմիտեին, **ԴՕՍԱԱՖ**-ի կենտկոմին, պատերազմի վետերանների սովետական կոմիտեին, քաղհրատին, հեղինակային իրավունքների համամիութենական գործակալությանը, «Պլակատ» հրատարակչությանը, «Գիտելիք» համամիութենական ընկերության վարչությանը, **ՍՍՀՄ** գրողների միության, **ՍՍՀՄ** կինեմատոգրաֆիստների միության, **ՍՍՀՄ** նկարիչների միության, **ՍՍՀՄ** կոմպոզիտորների միության, **ՍՍՀՄ** ժուռնալիստների միության, **ՍՍՀՄ** ճարտարապետների միության վարչություններին առաջարկված է մշակել և իրականացնել անհրաժեշտ միջոցառումներ առաջիկա հոբելյանի կապակցությամբ:

Հոբելյանական միջոցառումները մշակելիս նախատեսել Հոկտեմբերի 60-ամյակին նվիրված լավագույն աշխատանքների, գրականության և արվեստի ստեղծագործությունների գիտական և գեղարվեստական մրցույթների անցկացում, մրցույթների հաղթողներին՝ պետական մրցանակների շնորհում:

«Պրավդա», «Իզվեստիա», «Սովետսկայա Ռոսիա», «Սոցիալիստիչեսկայա ինդուստրիա», «Սելսկայա ժիզն», «Սովետսկայա կուլտուրա», «Էկոնոմիչեսկայա գազետա», «Տրուդ», «Կոմսոմոլսկայա պրավդա», «Լիտերատուրնայա գազետա» թերթերի, «Կոմունիստ», «Պարտիյնայա ժիզն», «Ագիտատոր», «Պոլիտիչեսկոյե սամոօբրազովանիե», «Վոպրոսի իստորիի ԿՊՍՍ» հանդեսների, այլ թերթերի ու հանդեսների խմբագրություններին, **ՍՍՀՄ** հրատպետկոմին, **ՍՍՀՄ** հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեին հանձնարարված է ապահովել Հոկտեմբերի 60-ամյակին նվիրված նյութերի սիստեմատիկ հրապարակումն ու հաղորդումը, գրքերի և գրքույկների հրատարակումը:

Համաժողովրդականորեն հարգել Հոկտեմբերի գործի համար զոհված մարտիկների պայծառ հիշատակը: Անցկացնել հին բոլշևիկների, սովետների

իշխանության համար պայքարած ակտիվ մարտիկների, հեղափոխության, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմի վետերանների, աշխատանքի հերոսների մեծարում:

***

Սովետական ժողովրդի հեղափոխական պատմական ստեղծագործությունները, կոմունիստական հասարակարգի կառուցման պայքարում նրա հաջողությունները, այն դժվարին, անձանոթ ճանապարհին ձեռք բերված հաղթանակները, որով մեր երկիրն ընթանում է արդեն վաթսուներորդ տարին, ճանաչում են ստացել ամբողջ աշխարհում: Դրանք Հոկտեմբերի գործի ուղղակի շարունակությունն են, մեծ Լենինի գաղափարների մարմնավորումը կյանքում: Այդ հաջողություններն ու նվաճումները, այդ պատմական փորձը դարձել են արդի համաշխարհային հեղափոխական շարժման ուղեցույց աստղը:

Հանուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության վեհ իդեալների՝ ավելի ու ավելի սերտորեն են համախմբվում արդիականության հեղափոխական, առաջադեմ ու խաղաղասեր ուժերը: Նրանց հարաճուն ակտիվությունը, գործողությունների ամրապնդվող միասնությունն ուղղված են մի նպատակի՝ կանխել նոր համաշխարհային պատերազմի վտանգը, կայուն խաղաղություն ու պայծառ ապագա ապահովել համայն մարդկության համար:

**ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեն դիմում է բանվորներին և կոլտնտեսականներին, սովետական մտավորականությանը, սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի ռազմիկներին, կոմունիստներին և կոմերիտականներին, մեր պանծալի կանանց, պատանիներին և աղջիկներին, բոլոր աշխատավորներին՝ կոչ անելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձը դիմավորել աշխատանքային նոր հաջողություններով, մեր հզոր սոցիալիստական տերության հոբելյանը նշանավորել էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի զարգացման նոր նվաճումներով:

**ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեն հաստատ վստահություն է հայտնում, որ սովետական բոլոր մարդիկ է՛լ ավելի սերտորեն կհամախմբվեն լենինյան կուսակցության շուրջը՝ **ՍՄԿԿ** XXV համագումարի նախատեսած կոմունիստական շինարարության հոյակապ պլանների կենսագործման պայքարում, մեծ Հոկտեմբերի վաթսունամյակի տոնը կդիմավորեն աշխատանքային փառավոր հաղթանակներով:

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննության առավ «ՍՄԿԿ Տոմսկի մարզկոմի կողմից մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ղեկավարման մասին» հարցը:**

Ընդունված որոշման մեջ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նշել է, որ կուսակցության Տոմսկի մարզկոմը, քաղկոմներն ու շրջկոմները նպատակամղված աշխատանք են կատարում մամուլի, հեռուստատեսության և ռադիոհաղորդումների կուսակցական ղեկավարման սիստեմը կատարելագործելու, կուսակցության XXV համագումարի որոշումների, «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցման մեջ, ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի շարադրած դրույթների և հետևությունների պրոպագանդման ու դրանց կատարման կազմակերպման գործում նրանց դերն ուժեղացնելու ուղղությամբ: Մարզի մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները ակտիվորեն նպաստում են տասներորդ հնգամյակի ժողովրդատնտեսական պլանի առաջադրանքներն հաջողությամբ կատարելու և գերակատարելու, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակն արժանավայել դիմավորելու համար սոցիալիստական մրցության ծավալմանը:

Կուսակցական կոմիտեները որոշում են թերթերի, հեռուստատեսության և ռադիոհաղորդումների աշխատանքի հիմնական ուղղությունները, կազմակերպում են նրանց գործունեության հստակ կոորդինացումը, ժուռնալիստների համակողմանի տեղեկացումը, բարելավում բազմատպաքանակ թերթերի և պատի թերթերի բովանդակությունը, բարձրացնում նրանց ելույթների ներգործունությունը:

ՍՄԿԿ մարզկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ղեկավարման գործում մշտապես իրենց տեսադաշտում են պահում կադրերի ընտրության ու դաստիարակության, նրանց գաղափարական և պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացման հարցերը: Շրջանային թերթերի խմբագիրները և բազմատպաքանակ թերթերի մեծամասնության խմբագիրները ընտրվել են կուսակցական կոմիտեների բյուրոների անդամներ:

Կուսակցական կոմիտեները մամուլը դիտում են որպես աշխատանքում լենինյան ոճի հաստատման կարևոր գործիք, ապահովում գործարար ու հարգալից վերաբերմունքը մամուլի ահազանգերի նկատմամբ, հսկողության տակ են առնում պրոբլեմային հարցերին նվիրված հրապարակումները, իսկ դրանցից առավել կարևորները քննարկում են կուսակցության մարզկոմի, քաղկոմների և շրջկոմների բյուրոներում: ՍՄԿԿ մարզկոմը սուր և օպերատիվ կերպով է արձագանքում մամուլում եղած քննադատության նկատմամբ անուշադիր վերաբերմունքի փաստերին:

Դրականապես գնահատելով մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ղեկավարման ասպարեզում կուսակցության Տոմսկի

մարզկոմի աշխատանքը, ՍՄԿԿ Կենտկոմը դրա հետ մեկտեղ նշել է, որ մարզի ոչ բոլոր կուսակցական կոմիտեներն են լրիվ չափով օգտագործում մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի հասարակական ուժը՝ աշխատավորներին ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների և տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարմանը մոբիլիզացնելու համար. բավականաչափ բարձր չէ գիտության ու տեխնիկայի նվաճումները պրակտիկայում ներդնելու, առաջավոր աշխատանքային նախաձեռնությունները տարածելու ուղղությամբ մամուլի գործունեության արդյունավետությունը:

Թերթերում, հեռուստատեսությամբ և ռադիոյով միշտ չէ, որ բովանդակալից ու սիստեմատիկ կերպով լուսաբանվում են ներկուսակցական աշխատանքի հարցերը: Քիչ են հրապարակվում նյութեր կուսակցական խմբերի կյանքի, բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտահետազոտական հիմնարկների, ստեղծագործական կոլեկտիվների, կառավարման ապարատի, առևտրի և կենցաղային սպասարկման ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների գործունեության մասին: Թուլացել է մամուլի ուշադրությունը գաղափարա-քաղաքական, բարոյական և աշխատանքային դաստիարակության փորձի ընդհանրացման և տարածման նկատմամբ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ՍՄԿԿ Տոմսկի մարզկոմին, կուսակցության քաղկոմներին և շրջկոմներին պարտավորեցրել է՝ ՍՄԿԿ XXV համագումարի ցուցումներին համապատասխան միջոցառումներ իրականցնել մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների քաղաքական ղեկավարման սիստեմն է՛լ ավելի կատարելագործելու, նրանց գաղափարական մակարդակը բարձրացնելու և էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի զարգացման վրա, ամբողջ հասարակական կյանքի վրա նրանց ներգործությունն ուժեղացնելու ուղղությամբ: Մամուլի, հեռուստատեսության և ռադիոհաղորդումների ջանքերը կենտրոնացնել ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման և ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում նրա ճառի դրույթների ու հետևությունների կատարումը կազմակերպելու վրա, յուրաքանչյուր տեղամասում աշխատանքի արդյունավետության բարձրացման և որակի բարելավման հարցերի, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, խնայողության ռեժիմի ուժեղացման, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ռեզերվների հայտնաբերման և օգտագործման, նոր օբյեկտների կառուցման ժամկետների և արժեքի կրճատման, ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ավելացման հարցերն առավել խոր կերպով լուսաբանելու վրա: Ապահովել մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ակտիվ մասնակցությունը սոցիալիստական մրցության և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման հետագա զարգացմանը, առանձնապես աշխատանքային կոլեկտիվների, բանվորների, գյուղատնտեսության աշխատավորների, մտավորականության առաջավոր փորձի, նախաձեռնության ու նորարարության պրոպագանդմանը:

Մամուլը կոչված է բացահայտելու և վերլուծելու նախատեսված բնագծերից առանձին ձեռնարկությունների ու տնտեսությունների ետ մնալու պատճառները, սուր կերպով հանդես գալու աշխատանքային կարգապահության խախտումների, հարբեցողության և խուլիգանության դեմ, անկազմակերպվածության և անտնտեսվարության փաստերի դեմ: Մամուլի օրգանների տեսադաշտում մշտապես պետք է գտնվեն առևտրի, հասարակական սննդի, սպասարկման ոլորտի աշխատանքը բարելավելու պրոբլեմները:

ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կոմիտեների ուշադրությունն է հրավիրել այն բանի վրա, որ անհրաժեշտ է ուժեղացնել մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների դերն աշխատավորների, հատկապես երիտասարդության և դեռահասների շրջանում կատարվող գաղափարա-դաստիարակչական աշխատանքում: Մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն պետք է ավելի ու ավելի ակտիվորեն ներազդեն սովետական մարդկանց մեջ մարքս-լենինյան աշխարհայացք, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք, բարձր բարոյականություն ձևավորելու վրա, վառ կերպով ցույց տան սովետական ապրելակերպի առավելությունները, վճռականորեն մերկացնեն բուրժուական պրոպագանդայի մեքենայությունները, պայքարեն կոմունիստական բարոյականության նորմաներից կատարվող նահանջների դեմ: Անհրաժեշտ է մամուլը ավելի լայնորեն օգտագործել գաղափարական աշխատանքի արդյունավետությունն ուժեղացնելու, դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը հաստատելու, սովետական մարդու անհատականության ձևավորման ասպարեզում ընտանիքի, դպրոցի, աշխատանքային կոլեկտիվի, հասարակական գործունեության դերը բարձրացնելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կոմիտեներին առաջարկել է ապահովել մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցներով կուսակցության ղեկավար դերի և նրա ներքին ու արտաքին քաղաքականության, էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, աշխատավորների քաղաքական դաստիարակության կուսակցական ղեկավարման փորձի խոր լուսաբանումը, վառ ու համոզիչ կերպով պրոպագանդել սովետական կարգերի դեմոկրատական բնույթը, սոցիալիստական հասարակարգի իսկական հումանիզմը: Ըստ ամենայնի բարձրացնել մամուլի դերը քննադատության և ինքնաքննադատության զարգացման գործում, համակողմանի աջակցություն ցույց տալ մամուլի սկզբունքային ելույթներին: Կադրերի մեջ դաստիարակել քննադատությունը ճիշտ գնահատելու և նրանից անհրաժեշտ հետևություններ անելու կարողություն:

ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցության մարզկոմին, քաղկոմներին և շրջկոմներին պարտավորեցրել է հասնել այն բանին, որ ժուռնալիստները հաստատակամորեն տիրապետեն մարքս-լենինյան տեսությանը, կոմունիստական իդեալները և ՍՄԿԿ-ի քաղաքականությունը էկոնոմիկայի, կուլտուրայի զարգացման, մարդկանց դաստիարակության կոնկրետ խնդիրների լուծման հետ անխզելի միասնությամբ պրոպագանդելու վարպետությանը: Մամուլի աշխատողներին կանոնավոր կերպով տեղեկացնել կուսակցական և սովետական մարմինների որոշումների մասին, պաշտպանել ժուռնալիստների հեղինակությունը, ընդսմին՝ ուժեղացնելով պահանջկոտությունը հրապարակվող նյութերի գաղափարական ու պրոֆեսիոնալ մակարդակի նկատմամբ: Հարկավոր է ավելի մեծ հոգատարություն ցուցաբերել ժուռնալիստների բնակարանային պայմանները, աշխատանքի ու հանգստի պայմանները բարելավելու նկատմամբ:

Որոշման մեջ նշվում է, որ կուսակցական կոմիտեները և թերթերի, հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների խմբագրությունները պետք է ավելի լայնորեն զարգացնեն հասարակական հիմունքները մամուլի գործունեության մեջ, մամուլին աշխատակցելու համար առավել մեծ չափով ներգրավել բանվորներին, կոլտնտեսականներին, ժողովրդական տնտեսության մասնագետներին, գիտնականներին, ստեղծագործական մտավորականությանը, երիտասարդ գրողներին, նկարիչներին և հրապարակախոսներին:

# ՄԵՐ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐԸ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները հսկայական ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը՝ «Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին»: Նրանք այդ որոշումը համարեցին ՍՄԿԿ XXV համագումարի կանխորոշած տնտեսական ստրատեգիայից բխող բարդ ու պատասխանատու խնդիրների լուծմանը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ամրապնդմանն ուղղված խոշոր, գիտականորեն մշակված միջոցառում: Դրանում արտահայտված է այն խոր հավատը, որ տածում են կոմկուսակցությունն ու սովետական կառավարությունը մեր երկրի հետագա բարգավաճման համար աշխատավորական զանգվածների, կոմունիստների ու կոմերիտականների դրսևորած անսպառ եռանդի և անկոտրում կամքի, պետական առաջադրանքների ու սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարման համար նրանց գործադրած ստեղծագործական հնարավորությունների հանդեպ:

Մեր երկրի ժողովրդական տնտեսության վերելքի, սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման համար վճռական նշանակություն ունեցող այդ որոշումը բխում է սոցիալիստական մրցության վերաբերյալ լենինյան հիմնարար դրույթներից, կուսակցության XXV համագումարի պահանջներից:

Աշխատավորների ստեղծագործական մրցությունը նոր հասարակարգի ծնունդն է և ուղեկիցը, սոցիալիստական շինարարության փորձված մեթոդը: Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ սոցիալիզմն առաջին անգամ է ճանապարհ հարթում իսկապես մասսայական մրցության համար: Նա գտնում էր, որ «...մրցության կազմակերպումը սոցիալիստական սկզբունքներով պետք է լինի հասարակության վերակազմության առավել կարևոր և առավել շնորհակալ խնդիրներից մեկը» (Երկեր, հ. 27, էջ 243): Եվ միանգամայն օրինաչափ է, որ ՍՄԿԿ XXV համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը հավուր պատշաճի արժեքավորեց առաջնորդի առաջ քաշած այդ դրույթները: «Մենք ամենքս,— ասաց նա,— ուրախանում ենք, թե ինչպիսի՜ խոր արմատներ են արձակել սոցիալիստական մրցության լենինյան գաղափարները: ...Մրցությունը խոր ազդեցություն է գործում տնտեսական պրակտիկայի վրա, երկրի հասարակական-քաղաքական կյանքի վրա, բարոյական մթնոլորտի վրա» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 126):

Մրցությունը մեր հասարակարգի տնտեսական ու սոցիալական առաջընթացի հզոր լծակն է, սովետական մարդկանց աշխատանքային ու բարոյական դաստիարակության փորձված դպրոցը: ՍՄԿԿ XXV համագումարը, համակողմանի և գիտականորեն մշակելով զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի վերելքի արմատական պրոբլեմները, տասներորդ հնգամյակի տնտեսական և ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման մեծ ծրագրի իրականացման գործում հույժ կարևորեց նաև սոցիալիստական մրցության վճռական ու առաջմղիչ դերը:



Սոցիալիստական մրցության լայն ծավալման, սովետական մարդկանց ստեղծագործական հնարավորությունների դրսևորման արգասիք են տասներորդ հնգամյակի առաջին տարվա արդյունքները: Մեր հանրապետության արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության և այլ բնագավառների աշխատողները, գործողության մարտական ծրագիր ընդունելով ՍՄԿԿ XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումի որոշումները, Լ. Ի. Բրեժնևի զեկուցման ու ճառի դրույթներն ու հետևությունները, մասնակցելով արդյունավետության և որակի հնգամյակի պետական պլանների, ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման համար ծավալված համաժողովրդական պայքարին, հասել են աննախադեպ հաջողությունների: Արդյունաբերության աշխատողներն անցած տարի, 1975 թ. համեմատությամբ, արտադրության ծավալը մեծացրին 8,6 տոկոսով և պլանից դուրս երկրին տվեցին 80 միլիոն ռուբլու արտադրանք: Գյուղատնտեսության աշխատողները կատարեցին և գերակատարեցին հացահատիկի, խաղողի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի, կարտոֆիլի, պտղի, կաթի, մսի և ձվի պետական գնումների պլանները: Հացահատիկի միջին բերքը կազմեց 20 ցենտներ: Հանրապետությունն առաջին անգամ ստացավ 300 հազար տոննա հացահատիկ: Տարեկան պլանը կատարել են նաև տրանսպորտի ու կապի, առևտրի ու կենցաղային ծառայության աշխատողները:

Գործարկվեց Հայաստանի ատոմային էլեկտրակայանի 405 հազար կիլովատ հզորությամբ էներգաբլոկը: Ջերմորեն շնորհավորելով ատոմային էլեկտրակայանի շինարարներին, մոնտաժողներին ու շահագործայիններին՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն իր ողջույնի հեռագրում նոր հաջողություններ մաղթեց նրանց մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում: Ատոմային էլեկտրակայանում տեղի ունեցած միտինգում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանն այդ նվաճումը բնութագրեց որպես «...աշխատանքի նկատմամբ սովետական մարդկանց իսկապես կոմունիստական վերաբերմունքի, ստեղծարար սոցիալիստական մրցության լայն թափի փայլուն արգասիք»:

Հայաստանի աշխատավորները լի են վճռականությամբ՝ հնգամյակի երկրորդ տարում բազմապատկելու իրենց աշխատանքային հաջողությունները, նոր, առաջավոր բնագծեր նվաճելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, մեր երկրի տնտեսական հզորության ամրապնդման ճանապարհին: Կուսակցական կազմակերպությունների պարտքն է՝ առավել խթանել աշխատավորների ստեղծագործական խանդավառությունը, նոր թափ հաղորդել համաժողովրդական սոցմրցությանը: Այս գործում լավագույն ուղեցույցը ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի վերջին որոշումն է:

Նախընթաց տարիներին կուտակված հարուստ փորձի, մրցության վերաբերյալ լենինյան դրույթների և կուսակցության արդի պահանջների հիման վրա այդ կարևոր փաստաթղթում համակողմանի մշակված ու նշված են մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման գլխավոր խնդիրներն ու նպատակները, հիմնական ուղղությունները, կոնկրետ ձևերն ու եղանակները, ստանձնած պարտավորությունների կատարման ուղիներն ու միջոցները: Կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների առաջնահերթ խնդիրն է՝ կազմակերպչական ու գաղափարաքաղաքական ողջ աշխատանքի նպատակը դարձնել ՍՄԿԿ XXV համագումարի նշած սոցիալ-տնտեսական ծրագրի իրագործման համար սոցիալիստական մրցության ծավալումը, տասներորդ հնգամյակի ժողովրդատնտեսական պլանի կատարումն ու գերակատարումը՝ «Աշխատել ավելի լավ, բարձրացնել արդյունավետությունն ու որակը» նշանաբանով:

Արդի փուլում սոցիալիստական մրցության առանձնահատկությունը նրա կազմակերպման ու ծավալման կոմպլեքսային, համապարփակ ու համաժո-

ժողովրդական բնույթն է։ Անհրաժեշտ է սոցմրցության մեջ ներգրավել աշխատավորական բոլոր խավերին՝ բանվորներին ու կոլտնտեսականներին, ինժեներա-տեխնիկական անձնակազմին ու ծառայողներին, արտադրական բոլոր օղակները։ Նրանք պետք է հստակ գիտակցեն իրենց անձնական ու կոլեկտիվ խնդիրները, իմանան ինչի՛ համար և ինչպե՛ս պայքարել։ Պարտավորությունները հարկ է կազմել ռեալ հնարավորություններին համապատասխան։ Շատ կարևոր են հումք, նյութեր, կոմպլեկտավորող առարկաներ մատակարարող և պատրաստի արտադրանք թողարկող ձեռնարկությունների կոլեկտիվների, հարակից բրիգադների, տեղամասերի, արտադրամասերի մրցության կազմակերպման կատարելագործումը, նրանց փոխադարձ կապերի ու հարաբերությունների ամրապնդումը, մրցության ու փոխօգնության արդյունավետ ձևերի կիրառումը։ Սոցիալիստական մրցության նկատմամբ կոմպլեքսային մոտեցմամբ, աշխատավորների ուժերի համակողմանի մոբիլիզացմամբ հնարավոր կլինի ապահովել ձեռնարկությունների, կառույցների, տնտեսությունների, բոլոր տեղամասերի համաչափ, հստակ աշխատանքը, լիովին օգտագործել արտադրության զարգացման և որակական ցուցանիշների բարձրացման առկա հնարավորություններն ու ռեզերվները։ Հանդիպական պլանները կարևոր միջոց են՝ ապահովելու կոլեկտիվի և յուրաքանչյուր աշխատողի ակտիվ մասնակցությունը ներքին ռեզերվների հայտաբերմանն ու օգտագործմանը։ Վերոհիշյալ գործոնների հետ մեկտեղ, ամսական, եռամսյակային, տարեկան և ողջ հնգամյակի պլանային առաջադրանքների կատարման հուսալի երաշխիքն է հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը։ Դրանք կարևոր և հրատապ խնդիրներ են, որոնց վրա հարկ է հրավիրել մրցողների ուշադրությունը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, ինչպես միշտ, այժմ ևս սոցիալիստական մրցության գլխավոր խնդիրն է։ Համամիութենական սոցիալիստական մրցության վերաբերյալ որոշմամբ այդ խնդրի լուծման ուղիները համարվում են կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման տեմպերի արագացումը, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի արմատավորումը, կադրերի պատրաստման կատարելագործումն ու նրանց որակավորման բարձրացումը, աշխատանքային և արտադրական կարգապահության ամրապնդումը։ Այստեղ կարևոր է նաև արտադրաֆոնդերի օգտագործման ըստ ամենայնի բարելավումը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը սոցիալիստական տնտեսավարության առաջնային խնդիրն է, որն ըստ Վ. Ի. Լենինի՝ նոր հասարակարգի հաղթանակի ամենակարևոր, ամենագլխավոր պայմանն է։ ՍՄԿԿ XXV համագումարն այն համարում է երկրի առջև ծառացած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրների հաջող լուծման միակ ուղին։ Ահա ինչու հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների 1977 թվականի սոցպարտավորություններում արտահայտված են և՛ աշխատանքի արտադրողականության բարձրացման մակարդակը, և՛ դրան հասնելու ուղիները։ Երևանի «Նաիրիտ» արտադրամիավորման, «Երևանկաբել», «Երազ», ալյումինի գործարանների և այլ առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվներ սոցմրցությամբ պարտավորվել են ապահովել աշխատանքի արտադրողականության զգալի աճ, այդ նպատակով իրականացնել նոր տեխնիկայի ներդրման, ավտոմատացման և մեքենայացման, ռացիոնալիզատորական ու գյուտարարական շարժման ծավալման, կադրերի ուսուցման ու որակավորման բարձրացման և կազմակերպական-տեխնիկական այլ միջոցառումներ։ Բնագծերի ստույգ ու բանիմաց սահմանման շնորհիվ 1976 թվականին Հայաստանի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը, նախատեսված 3,9-ի փոխարեն, աճեց 5,2 տոկոսով։

Արտադրանքի որակի բարելավումը սերտորեն կապված է խնայողության ռեժիմի կիրառման հետ։ Որակի պրոբլեմը, ինչպես շեշտվեց ՍՄԿԿ XXV համագումարում, ընդգրկում է տնտեսական մեր ողջ գործունեությունը։ «Բարձր որակն աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողությունն է, արտահանության հնարավորությունների աճը, իսկ, վերջին հաշվով, հասարակության պահանջմունքների է՛լ ավելի լավ, է՛լ ավելի լրիվ բավարարումը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը..., էջ 72)։



«Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» որոշմամբ սոցիալիստական մրցության գլխավոր ուղղություններից են արտադրանքի որակի բարելավումը և խնայողության ռեժիմը։ Այդ խնդիրների պատշաճ լուծումը պայմանավորվում է կոնստրուկտորական առաջավոր լուծումներով, տեխնոլոգիայի կատարելագործմամբ, հումքի և նյութերի տեսակարար ծախսումների նվազեցմամբ, բարձրորակ արտադրանքի թողարկման ավելացմամբ, արտադրության ընդհանուր ծավալում դրա տեսակարար կշռի մեծացմամբ և այլ գործոններով։ Սոցիալիստական մրցության պայմանները մշակելիս և տարվա բնագծերը սահմանելիս հանրապետության արտադրական կոլեկտիվները հաշվի են առնում այդ գործոնները և հստակ որոշում իրենց անելիքները։

Երևանի էլեկտրասարքերի գործարանի կոլեկտիվը բարձրորակ արտադրանքի թողարկման լավ փորձ է կուտակել։ Այստեղ անցած տարի որակի պետական նշանով թողարկվող արտադրանքի տեսակարար կշիռը հասավ 65 տոկոսի։ Ներգրավվելով համամիութենական սոցմրցության մեջ՝ կոլեկտիվը պարտավորվել է ընթացիկ տարում պետական որականիշով թողարկել արտադրանքի 68 տոկոսը։ Էլեկտրասարքաշինողները միաժամանակ խոստացել են երկու տարվա ընթացքում տնտեսել 35 տոննա սև, մեկ տոննա գունավոր մետաղ, 100 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Սա լուրջ նվաճում է, որն արգասիք է կուսկազմակերպության պատշաճ ղեկավարության ու հոգածության։

Արտադրանքի որակի և խնայողության վերաբերյալ հիմնավորված սոցիալիստական պարտավորություններ են ստանձնել նաև Երևանի էլեկտրալամպերի, ավտոմոբիլային, ալյումինի, քիմիական ռեակտիվների, էլեկտրատեխնիկական, Կիրովականի ճշգրիտ հաստոցների, ավտոգենային մեքենաշինության և հանրապետության շատ այլ գործարանների ու ֆաբրիկաների կոլեկտիվներ։ Երեք տասնյակից ավելի ձեռնարկություններ որոշել են արմատավորել արտադրանքի որակի կառավարման համակարգ ստեղծելու Լվովի մարզի առաջավոր կոլեկտիվների փորձը։ Հանրապետության 1977 թ. ժողովրդատնտեսական պլանով նախատեսվում է՝ ավելի քան 750 անուն արտադրանք թողարկել պետական որականիշով, դրա տեսակարար կշիռը հասցնել 10,3 տոկոսի, իսկ երկրորդ կատեգորիայի արտադրանքինը՝ 2,1-ից իջեցնել 1,2 տոկոսի։ Պարտավորությունները գերազանցում են բնագծերը։ Կուսակցությունը պահանջում է արտադրանքի որակը դարձնել հատուկ հոգածության առարկա։ Կուսկազմակերպությունները պարտավոր են մրցողների բոլոր ջանքերն ուղղել դրան, պարզաբանել որակի բարելավման գործում յուրաքանչյուրի դերը, խոտանն ու անբարեխիղճ աշխատանքը ենթարկել հասարակական պարսավանքի։

Ինչպես նշել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը Մոսկվայի «Զիլ» ավտոգործարանի կոլեկտիվի միտինգում (1976 թ. ապրիլ), ճիշտ է, որակի վրա ազդում է բացառապես ամեն ինչ՝ թե՛ հաստոցի կարգավորումը, թե՛ գծագրերի հավաստիությունը, թե՛ արտադրության մեջ հստակ տնօրինությունը, բայց այդ գործոններից յուրաքանչյուրի ակունքների մոտ կանգնած են կոնկրետ կատարողները։ Հետևապես, վերջին հաշվով, ամեն ինչ հանգում է մարդկանց բարեխղճությանը, նրանց աշխատանքի որակին։ Այս առումով միանգամայն ուշագրավ է «Երևանկաբել» գործարանի կոլեկտիվի արտադրանքի որակի նկատմամբ բանվորական ինքնավերահսկողություն սահմանելու, արտադրանքի 95 տոկոսն առաջին ներկայացմամբ հանձնելու վերաբերյալ պարտավորությունը։ Մի շարք ձեռնարկություններում բանվորներն աշխատում են անձնական դրոշմով, առանց վերահսկիչների։

Կուսակցական, կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ մրցողների, մասնավորապես գիտնականների և ինժեներա-տեխնիկական աշխատողների, ուշադրությունը սևեռել գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացմանը, իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով հայրենական և համաշխարհային լավագույն նվաճումները գերազանցող նոր արտադրատեսակների ստեղծմանը, ժողովրդական տնտեսության մեջ գիտական մշակումների լայն ներդրմանը: Աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, խնայողության ռեժիմին նպաստող վճռական գործոններ և կարևոր չափանիշներ են դրանք, որոնց այնքան մեծ կարևորություն է տրվել համամիութենական սոցիալիստական մրցության վերաբերյալ որոշմամբ:

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նոր որոշմամբ սոցիալիստական մրցության կարևոր ուղղություն է գյուղատնտեսության զարգացումը: Այս բնագավառում խնդիր է դրվում մրցողների ջանքերն ուղղել հացահատիկի, մսի, կաթի և հողագործական ու անասնապահական մյուս մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի ավելացմանը, որակի բարելավմանը, գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացմանը: Այս պահանջները բխում են կուսակցության ագրարային քաղաքականության՝ ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդրի լուծման անհրաժեշտությունից— գյուղատնտեսությունը դարձնել ժողովրդական տնտեսության բարձրարդյունավետ և առավել արտադրողական ճյուղ: Գյուղատնտեսության վերելքի ուղին դրա մասնագիտացումն ու կոոպերացումն է, արդյունաբերական եղանակով վարումը, համակողմանի ինտենսիֆիկացումը:

Գյուղատնտեսության զարգացումը կուսակցության հատուկ հոգածության առարկան է: Դրա վկայությունն է «Կոլտնտեսականներին, սովխոզների բանվորներին, մեխանիզատորներին, գիտնականներին, գյուղատնտեսության մասնագետներին, գյուղին նյութատեխնիկական միջոցներ մատակարարող արդյունաբերության աշխատողներին, Սովետական Միության բոլոր աշխատավորներին» ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թ. հունվարի նամակը: Բարձր գնահատելով գյուղի մարդկանց ներդրած ջանքերն ու 1976 թ. ձեռք բերած հաջողությունները՝ կուսակցության Կենտկոմը հանգամանորեն նշում է գյուղատնտեսության զարգացման խնդիրները և արտադրության մարդկանց, մասնագետների, տնտեսությունների ղեկավարների ու կուսկազմակերպությունների անելիքները: Ինչպես նամակում, նույնպես և համամիութենական սոցիալիստական մրցության վերաբերյալ որոշման մեջ շեշտը դրվում է հողագործության և անասնապահության վարման կուլտուրայի բարձրացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալի ավելացման, բերքատվության ու մթերատվության աճման հնարավորությունների ու ռեզերվների լայն օգտագործման, նյութական ու աշխատանքային ծախսումների արդյունավետության բարձրացման հարցերի վրա:

Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները կոնկրետ գործերով են պատասխանում կուսակցության ու կառավարության նոր կանխագծումներին, արտահայտում դրանց իրագործման իրենց հաստատակամությունը: Այդ մասին են վկայում կոլտնտեսությունների ու սովխոզների՝ պլանային առաջադրանքները գերազանցող սոցպարտավորությունները: Կալինինոյի շրջանի Միխայլովկա գյուղի կոլտնտեսության անասնապահները, օրինակ, խոստացել են այս տարի պլանից ավելի ստանալ 360 տոննա կարտոֆիլ, 70 տոննա միս, 206 տոննա կաթ, մեկ կովի մթերատվությունը, անցած տարվա 3.113-ի փոխարեն, հասցնել 3.250 կիլոգրամի: Հրազդանի շրջանի Մեղրաձոր գյուղի կոլտնտեսության անասնապահները պատրաստակամություն են հայտնել այս տարի նվաճել մսի վաճառքի 1978 թվականի բնագիծը: Խոստացել են հեկտարից 46 ցենտներ հացահատիկ ստանալ Արթիկի շրջանի Հայրենյաց գյուղի կոլտնտեսականները: Ախուրյանի շրջանի Ղարիբջանյանի կոլտնտեսության հողագործները պարտավորվել են շաքարի ճակնդեղի ցանքադաշտի ամեն մի հեկտարի բերքատվությունը հասցնել 550 ցենտների: Ուշագրավ երևույթ էր կթվորերեքհազարականների՝ վերջերս տեղի ունեցած խորհրդակցությունը, որի մասնակիցները կոչ արեցին հանրապետության կթվոր-անասնապահներին՝ պայքարել ամեն մի կովից 3000 կիլոգրամ կաթ ստանալու համար:

Սովխոզների ու կոլտնտեսությունների ստանձնած բարձր պարտավորությունները կուսակցության գործին գյուղի մարդկանց նվիրվածության վառ օրինակ են:

ՍՄԿԿ XXV համագումարի մշակած՝ ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման կուրսին համապատասխան՝ որոշման մեջ սոցիալիստական մրցության հիմնական ուղղություններն են համարվում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացումը, բնակչության բազմակողմանի պահանջմունքների բավարարումը, նրա սպասարկման կուլտուրայի բարձրացումը և այլն: Սովետական մարդկանց նկատմամբ կուսակցության ջերմ հոգատարության մի նոր արտահայտություն են այդ խնդիրների առաջադրումը, դրանց լուծման ուղիների հստակ սահմանումը:

«Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» որոշման կարևոր առանձնահատկություններից մեկն այն է, որ հսկայական տեղ է հատկացվում մրցողների շահագրգռության բարձրացման խնդիրներին: Կուսակցական, կոմերիտական և արհմիութենական մարմիններին ու կազմակերպություններին, մինիստրություններին ու գերատեսչություններին ընձեռվում են մրցության հաղթողներին նյութապես և բարոյապես խրախուսելու լայն հնարավորություններ: Նախորդ տարիների համեմատությամբ, զգալիորեն ավելացել են մրցանակները: Առաջավորների նյութական ու բարոյական խրախուսման զուգորդման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների կատարման կոնկրետ արտահայտությունն է այդ:

Տասներորդ հնգամյակի առաջին տարվա բարձր արդյունքների համար մեր հանրապետության գյուղատնտեսության 1.400 առաջավորներ, կուսակցական, սովետական ու տնտեսական պատասխանատու աշխատողներ վերջերս պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով: Դա արտադրության մարդկանց գործադրած մեծագույն ջանքերի, նրանց հայրենանվեր գործերի արժանի գնահատանքն է: Հայրենիքը սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման արժանացրեց գյուղատնտեսության հմուտ կազմակերպիչ, կուսակցության հավատարիմ զինվոր, Նոյեմբերյանի շրջանի «Հաղթանակ» սովխոզի դիրեկտոր Ա. Հայրապետյանին: Անտարակույս, նոր հնգամյակի առաջիկա տարիներին երևան կգան շքանշանակիրների ու մեդալակիրների նոր՝ շատ անուններ:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների, արհմիությունների անհետաձգելի խնդիրն է՝ կատարելագործել և բազմազան դարձնել մրցության հաղթողների խրախուսման ձևերը, դրանք ծառայեցնել ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծմանը, քանակական ու որակական ցուցանիշների լավացմանը:

Հոբելյանական է տասներորդ հնգամյակի երկրորդ տարին. լրանում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը: Մեր բովանդակ երկրում ամենուրեք, ինչպես և մեր հանրապետությունում, լայնորեն ծավալվել է սոցիալիստական մրցությունը՝ մեծ տարելիցն արժանավայել դիմավորելու համար: Կուսակցական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների, մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների ու տնտեսությունների ղեկավարների առջև ծառանում են պատասխանատու, պատվավոր խնդիրներ: Որոշմամբ նրանցից պահանջվում է սոցիալիստական մրցությունը դարձնել մասսայական ու ներգործուն, օգտագործել դրա հսկայական հնարավորությունները՝ սովետական պետության տնտեսական և պաշտպանական հզորությունն ամրապնդելու, ժողովրդի բարեկե-

ցության անշեղ աճն ապահովելու, աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը բարելավելու, սովետական ապրելակերպը զարգացնելու համար։

Հանրապետության արտադրական շատ կոլեկտիվներ, արտադրության առաջամարտիկներ, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները հետևողականորեն կենսագործելու նպատակով, հանդես են գալիս տասներորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի որակը բարելավելու, հումքը, նյութերը և էլեկտրաէներգիան տնտեսելու հայրենասիրական նախաձեռնություններով։ Դրանք սոցիալիստական մրցության շարժիչ ուժերն են, աշխատանքի նկատմամբ սովետական մարդկանց կոմունիստական վերաբերմունքի դրսևորումը, սոցիալիստական ձեռներեցության, քաղաքական ակտիվության արտահայտությունը։ Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են՝ ըստ ամենայնի խրախուսել այդ նախաձեռնությունները, նպաստել դրանց տարածմանն ու արմատավորմանը։ Նրանց ծավալած կազմակերպական ու քաղաքական ողջ աշխատանքը, տնտեսագիտական ուսուցումը պետք է լիովին ծառայեն սոցիալիստական մրցության արդյունավետության բարձրացմանը, դրա հրապարակայնությանը, առաջավոր փորձի լայն ներդրմանը, մրցողների համակողմանի մոբիլիզացմանը, ստեղծագործական ունակությունների բացահայտմանը։

Կուսակցական ու հասարակական կազմակերպությունների համար այժմ չկա ավելի կենսական գործ, քան սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման ձևերի ու մեթոդների կատարելագործումը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման ընդլայնումը, արտադրության արդյունավետության, աշխատանքի և արտադրանքի որակի նկատմամբ մրցողների ուշադրության կենտրոնացումը։ Այդ է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումից, սոցիալիստական էկոնոմիկայի անշեղ զարգացման շահերից բխող հրատապ պահանջը։

Այդ կարևորագույն պահանջի և ՍՄԿԿ XXV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման պատրաստակամության ցայտուն արտահայտություն են Սովետական Հայաստանի աշխատավորների սոցիալիստական բարձր պարտավորությունները, որոնք հաստատեց հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների՝ վերջերս տեղի ունեցած ակտիվի ժողովը՝ աշխատավորական կոլեկտիվների ներկայացուցիչների հետ համատեղ։ Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, 1977 թվականի և տասներորդ հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու նպատակով բարձր պարտավորություններ են ստանձնել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների աշխատողները։ Արդյունաբերության աշխատողները, օրինակ, խոստացել են արտադրանքի իրացման և կարևորագույն արտադրատեսակների թողարկման ընթացիկ տարվա պլանը կատարել մինչև դեկտեմբերի 27-ը, թողարկել 60 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք, աշխատանքի արտադրողականությունը պլանի համեմատությամբ բարձրացնել 15 տոկոսով, խնայել մեծ քանակությամբ հումք ու նյութեր, վառելիք ու էլեկտրաէներգիա, իրականացնել գիտատեխնիկական առաջընթացի արագացման բազմաթիվ միջոցառումներ։

Կուսակցության նոր պահանջներից են բխում նաև գյուղատնտեսության ու շինարարության, տրանսպորտի ու կապի, առևտրի ու կենցաղային ծառայության, գիտության ու կուլտուրայի, կրթության ու առողջապահության աշխատողների սոցիալիստական պարտավորությունները։

Կուսակցական և հասարակական կազմակերպությունների, տնտեսական մարմինների, բոլոր մրցողների նշանաբանն է՝ բարձր պահել սոցիալիստական մրցության դրոշը։ Նրանց պարտքն է ապահովել ստանձնած բոլոր պարտավորությունների անհապաղ կատարումը՝ հանուն սովետական ժողովրդի բարօրության, մեր հայրենիքի հետագա բարգավաճման ու հզորացման։



# ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Ն. ՊՈԴԳՈՌՆԻ**
ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ,
ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ ապրում է ՍՄԿԿ XXV համագումարի գաղափարներով։ Կուսակցական կազմակերպություններում, աշխատանքային կոլեկտիվներում միլիոնավոր սովետական քաղաքացիներ, կոմունիստներ ու անկուսակցականներ հսկայական հետաքրքրությամբ քննարկում են, միահամուռ հավանություն տալիս ու կոնկրետ գործերով մարմնավորում նրա հոյակապ կանխագծումները։ Համագումարի պատմական որոշումները շարունակում են զբաղեցնել արտասահմանյան լայն հասարակայնության, ողջ պրոգրեսիվ մարդկության մտքերը։

Կուսակցության Կենտկոմի հաշվետու զեկուցումը նրա XXV համագումարին, որով սովետների երկրի կոմունիստների բարձրագույն ֆորումում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, իրավամբ անվանում են մեր ժամանակի աչքի ընկնող փաստաթուղթ, զարգացած սոցիալիզմի մանիֆեստ։

Համագումարում համոզիչ հիմնավորում ստացավ կուսակցության վարած քաղաքական կուրսը, որը լրիվ չափով հաշվի է առնում մեր ապրած ժամանակաշրջանի յուրահատկությունը, որը և, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, կազմում է քաղաքականության ողջ դժվարությունը, քաղաքականության ողջ արվեստը։ Եվ եթե համագումարի աշխատանքին մոտենանք լենինյան այս բարձր չափանիշների տեսակետից, ապա վստահությամբ կարելի է ասել, որ այդ ամբողջ աշխատանքը և ամենից առաջ Կենտկոմի հաշվետու զեկուցումը դարձան ռեալիստական, գիտականորեն հիմնավորված, հետևողականորեն դասակարգային քաղաքականության բարձրագույն արվեստի մարմնավորումը, մի քաղաքականության, որն իր գերագույն նպատակը տեսնում է աշխատանքի մարդկանց, խաղաղության և սոցիալական պրոգրեսի իդեալներին ծառայելու մեջ։

Կուսակցության քաղաքականության կենսական ուժի, նրա վարած կուրսի ճշտության նոր դրսևորումը հանդիսացան ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերյան (1976 թվական) պլենումի որոշումները։ Ամբողջությամբ ու լրիվ հավանություն տալով կուսակցության XXV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագրի և արտաքին քաղաքական կուրսի իրականացման նպատակով Կենտկոմի Քաղբյուրոյի գործունեությանը, Լ. Ի. Բրեժնևի ճառի դրույթ-

ներին ու հետևություններին, պլենումը կարևոր ուղենիշ հանդիսացավ տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման, սովետական պետության տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման, ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքի համար մղվող պայքարում։

Լենինյան կուսակցության ղեկավարած սովետական մեծ ու հերոսական ժողովուրդը՝ մարդկանց պատմական այդ նոր հանրությունը, որը հիմնված է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի անխախտ դաշինքի վրա՝ բանվոր դասակարգի առաջատար դերով, մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների բարեկամության վրա, շատ փառապանծ հաղթանակներ է տարել կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում և միջազգային ասպարեզում։ Այդ հաղթանակները մյուս գործոնների հետ միասին աստիճանաբար կոմունիստականի վերաճող սոցիալիստական հասարակարգի քաղաքական սիստեմի համակողմանի զարգացման արգասիքն են։

Մեր քաղաքական սիստեմը սկիզբ է առել ու առավել մեծ հասունություն ձեռք բերել 1917 թ. Հոկտեմբերից, երբ աշխատավորական զանգվածների ծոցում սկսեց եռալ ստեղծագործական կազմակերպչական աշխատանքը, աղբյուրի նման հորդեց նորացնող, հեղափոխությամբ սրբագործված կյանքը։ «Աշխարհը,— ասում էր Լենինը,— չի տեսել նման ոչ մի բան, ինչ այժմ տեղի է ունենում մեզ մոտ, Ռուսաստանում, այս հսկայական երկրում, որը բաժանված է մի շարք առանձին պետությունների և բաղկացած է անհագին թվով բազմազան ազգություններից ու ժողովուրդներից... Նրանք, այդ բանվորներն ու գյուղացիները, սկսել են տիտանական առաջադրանքների տեսակետից չտեսնված մի աշխատանք և սովետների հետ միացած մինչև վերջը կխորտակեն կապիտալիզմի շահագործումը...» (Երկեր, հ. 26, էջ 585)։

Այդ ժամանակից անցել է գրեթե 60 տարի։ Այդ ժամանակամիջոցում մենք կառուցեցինք զարգացած սոցիալիզմ, ստեղծեցինք առաջավոր էկոնոմիկա, բազմապատկեցինք կուլտուրայի գանձերը, ՍՍՀՄ-ի հարյուրից ավելի ազգերի ու ազգությունների ջանքերն ուղղեցինք անդասակարգ հասարակարգի կառուցմանը։ Այս ամենը հնարավոր եղավ ամենից առաջ ՍՄԿԿ-ի կազմակերպող դերի, նրա ներքին ու արտաքին ճիշտ քաղաքականության շնորհիվ, այն ուշադրության շնորհիվ, որ նա շարունակ նվիրում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը, սոցիալիստական պետականության, դեմոկրատիայի կատարելագործմանը, պետական և հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդմանը։ Սահմանադրության համապատասխան, հանդիսանալով աշխատավորների ինչպես հասարակական, այնպես էլ պետական բոլոր կազմակերպությունների ղեկավար կորիզը, լինելով սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների գլխավոր կրողը, բանվոր դասակարգի և ամբողջ ժողովրդի քաղաքական առաջնորդը, լենինյան կուսակցությունն անխոնջ կերպով հոգում է հասարակության և պետության գործերի կառավարմանն աշխատավորների ավելի ու ավելի լայն մասնակցության, անհատի համակողմանի բարգավաճման համար պայմանների ստեղծման մասին։

Պետական և հասարակական կազմակերպությունների կուսակցական ղեկավարման, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման հարցերը, բնականաբար, աչքի ընկնող տեղ գրավեցին XXV համագումարի աշխատանքում։ Եվ դա հասկանալի է։ Դեմոկրատիայի զարգացումն ու խորացումը կազմում են սոցիալիստական հասարակարգի առաջընթացի գլխավոր ուղղությունը։ Կոմունիստները կապիտալի երկրներում հանդես են գալիս որպես դեմոկրատիայի համար պայքարող հետևողական ու տոկուն մարտիկներ։ Դեմոկրատիայի գաղափարներն ավելի ու ավելի մեծ նշանակություն են ձեռք բերում երիտասարդ, զարգացող պետությունների պրակտիկայում։ Դրանք ավելի ու ավելի հաճախ են արտացոլում գտնում նաև միջազգային կյանքում, որի մասին են վկայում, օրինակ, վերջին տարիների այնպիսի փաստաթղթեր, ինչպիսիք են անվտանգության և համագործակցության համաեվրոպական



խորհրդակցության Եզրափակիչ ակտը, Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Բեռլինի կոնֆերանսի որոշումները։

Միևնույն ժամանակ դեմոկրատիայի պրոբլեմներն ավելի ու ավելի են դառնում նոր և հին աշխարհների գաղափարական հակամարտության կենտրոնակետը, ռեալ սոցիալիզմի դեմ մեր դասակարգային հակառակորդների գրոհների գրեթե գլխավոր առիթը։ Այդ գրոհներն արձագանք են երկրագնդի բնակչության ամենալայն զանգվածների համար սոցիալիզմի հարաճուն ձգողական ուժի նկատմամբ, զանգվածներ, որոնք սեփական փորձով համոզվում են, որ առանց իսկական ժողովրդական իշխանության չկա և չի կարող լինել աշխատավորների կենսական շահերին համապատասխանող առաջադիմություն։

Դեմոկրատիայի հարցն ամենասերտ կերպով կապված է իշխանության և պետության հարցի հետ, որոնք, ինչպես քանիցս շեշտել են գիտական կոմունիզմի հիմնադիրները, դասակարգային պայքարի վճռական ասպարեզն են։ Արդի դարաշրջանում՝ սոցիալական աննախընթաց ցնցումների, ազատագրական շարժումների թափի, վերջին հաշվով, համայն մարդկության՝ դեպի սոցիալիզմ անցնելու անդառնալի պրոցեսի շնորհիվ միջազգային հարաբերություններում կատարված արմատական տեղաշարժերի դարաշրջանում, քաղաքական իշխանության հարցը սրվում է հսկայական ուժով։

Դեմոկրատիայի պրոբլեմների նշանակությունը բացատրվում է մարդկանց կյանքի հետ, մարդու ամենակենսական պահանջմունքներից մեկի հետ դրա ունեցած անմիջական կապով, մի պահանջմունք, երբ մարդ ցանկանում է լինել հասարակության մեջ կատարվող պրոցեսների ակտիվ մասնակիցը և սեփական բախտի տերը, լուծել իր երկրի զարգացման արմատական հարցերը։ Գիտատեխնիկական հեղափոխության ընթացքում՝ նյութական արտադրության բնույթի ու կազմակերպման մեջ, հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքում նրա հարուցած փոփոխությունների կապակցությամբ, հասարակական հարաբերությունների հետագա բարդացման, մասսաների ինքնագիտակցության աճման կապակցությամբ շարունակվում է ուժեղանալ ուշադրությունը դեմոկրատիայի պրոբլեմների նկատմամբ։

Դեմոկրատիայի պրոբլեմները, այսպիսով, այսօր ձեռք են բերում առանձնահատուկ սրություն, դառնում են ինչպես ներկա, այնպես էլ ապագա սերունդների բախտի հետ կապված կոնկրետ քաղաքական շահերի մի ամբողջ կոմպլեքսի առանցքը։ Այդ պրոբլեմների լուծման մեջ բախվում են տրամագծորեն հակադիր երկու մոտեցումներ. մեկը հենվում է ռեալ սոցիալիզմի դեմոկրատիայի նվաճումների վրա, որի դրոշի տակ ավելի ու ավելի սերտորեն են համախմբվում մեր ժամանակի առաջադեմ ուժերը, մյուսը՝ դատապարտված, իր դարն ապրող բուրժուական դեմոկրատիայի պաշտպանության վրա։

Դեմոկրատիայի պրոբլեմների ստեղծագործական մշակումը չափազանց կարևոր է ինչպես սովետական հասարակության քաղաքական սիստեմի հետագա զարգացման ուղիների տեսական իմաստավորման, կոմունիստական շինարարության խնդիրների պրակտիկ լուծման, այնպես էլ մեր գաղափարական հակառակորդների ավելի հաջող մերկացման համար։

## ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ

Դեմոկրատիան պատմական, դասակարգային երևույթ է։ Եվ յուրաքանչյուր դարաշրջան, յուրաքանչյուր դասակարգ, որի համար, ըստ էության, իբրև գործիք է հանդես գալիս այս կամ այն դեմոկրատական ինստիտուտը, որոշակի յուրահատկություն են հաղորդում նրա ըմբռնմանը։ Մարքսիզմ-լենինիզմն առավելագույն պարզությամբ բացահայտեց բուրժուական դեմոկրատիայի իսկական էությունը, ցույց տվեց նրա ռեալ հնարավորությունները և դրա հետ մեկտեղ անխուսափելի սահմանափակությունն ու դատապարտվածությունը։

Սոցիալիստական դեմոկրատիան սկզբունքորեն նոր տիպի դեմոկրատիա է, բնակչության ճնշող մեծամասնության, իսկ ապա նաև ամբողջ ժողովրդի

իշխանություն: Լինելով աշխատավորների զավակը, այդ դեմոկրատիան իրենից ներկայացնում է սոցիալական հեղափոխության բարձրագույն նպատակների իրականացման գործիք, որոնց հաղթանակը կնշանակի հումանիզմի, հավասարության, արդարության սկզբունքների լիակատար հաղթանակ: Նրա հետևողական զարգացումը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման օրինաչափությունն է, սովետական պետությունն ամրապնդելու, հասարակության ողջ քաղաքական սիստեմը կատարելագործելու նպատակով կուսակցության ծավալած աշխատանքի միջուկը:

«Այժմ արդեն մենք ոչ միայն տեսությունից, այլև բազմամյա պրակտիկայից գիտենք. ինչպես իսկական դեմոկրատիան է անհնար առանց սոցիալիզմի, այնպես էլ սոցիալիզմն է անհնար առանց դեմոկրատիայի մշտական զարգացման,— շեշտում է Լ. Ի. Բրեժնևը:— Մեր սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը մենք հասկանում ենք, ամենից առաջ, որպես հասարակության բոլոր գործերի կառավարմանը աշխատավորների ավելի ու ավելի լայն մասնակցության անշեղ ապահովում, որպես մեր պետականության դեմոկրատական հիմունքների հետագա զարգացում, որպես պայմանների ստեղծում անհատի համակողմանի բարգավաճման համար»:

Սոցիալիզմն իսկական հեղաշրջում իրագործեց ինչպես դեմոկրատիայի վերաբերյալ մարդկության պատկերացումներում, այնպես էլ նրա պատմական ճակատագրում: Հաստատելով աշխատավոր մեծամասնության իշխանությունը, սոցիալիզմը դրանով իսկ դեմոկրատիայի շենքի համար ստեղծեց սկզբունքորեն այլ, անչափ ավելի կայուն ու կենսունակ սոցիալական բազա: Սոցիալիզմի զարգացման, հասունության աստիճաններով նրա վերընթաց շարժման, սոցիալիստական ապրելակերպի հաստատման հետ զուգընթաց անշեղորեն աճում են դեմոկրատիայի նշանակությունն ու դերը:

Սոցիալիստական հասարակարգը աշխատանքի մարդուն ճորտությունից ազատագրում է նյութապես և հոգեպես, նրան վստահություն է տալիս վաղվա օրվա նկատմամբ, նրան դարձնում է ակտիվ մարտիկ, որը վճռական ազդեցություն է գործում քաղաքականության ձևավորման վրա, իր պետության ապագայի սահմանման վրա: Ոչ թե ընտրյալ միայնակ մարդիկ, ոչ թե տիրապետող էլիտան, այլ հենց ժողովրդական լայն զանգվածները՝ պատմության այդ իսկական կերտողներն են դառնում նոր դարաշրջանի գլխավոր գործող անձը: Սա է սոցիալիստական դեմոկրատիայի կենսահաստատ մեծ սկզբունքը, դրա հզոր ստեղծարար ուժը:

Բոլորին հայտնի է, որ մեր երկրում ՍՍՀՄ Սահմանադրությամբ, մյուս օրենքներով, սոցիալ-տնտեսական լայն իրավունքներից բացի, հռչակված են խոսքի, մամուլի, ժողովների ազատություն, բնակարանի անձեռնմխելիություն, նամակագրության գաղտնիություն և քաղաքացիական այլ ազատություններ: Ըստ որում, ի տարբերություն բուրժուական պրակտիկայի, դեմոկրատիայի այդ անկապտելի տարրերը ոչ թե պարզապես հռչակվում են, այլ ռեալ կերպով երաշխավորվում և ապահովվում են ամենից առաջ այն բանով, որ արտադրամիջոցները, հասարակական բոլոր հարստություններն անցնում են ժողովրդի ձեռքը, ապահովվում են մեր կյանքի հենց կացութաձևով, սոցիալիստական հասարակարգի անսպառ հնարավորություններով և ռեսուրսներով: Միայն սոցիալիզմն է գործով ապահովում դեմոկրատական ազատությունների իրականացումը, արդյունավետորեն պաշտպանում և իրականացնում ինչպես ամբողջ ժողովրդի, այնպես էլ յուրաքանչյուր քաղաքացու շահերն ու իրավունքները: Մեզ համար դեմոկրատական է այն, ինչը ծառայում է ժողովրդի շահերին, կոմունիստական շինարարության շահերին: Այն ամենը, ինչ հակասում է դրան, մենք, բնականաբար, մերժում ենք:

Բուրժուական մի շարք և արտասահմանյան այլ «բարյացակամներ» այժմ սովետական մարդկանց, սոցիալիզմի մյուս երկրների աշխատավորներին համառորեն «խորհուրդներ» են տալիս, թե ինչպես ավելի լավ զարգացնել սոցիալիստական դեմոկրատիան, տրտնջում են այն առթիվ, որ նա, իբր, բավարար չափով լիբերալ չէ, շարունակ կրկնում են բուրժուական դեմոկրատիայի



կարծեցյալ առավելությունների մասին, որը, իբր, հենց միայն լայն ասպարեզ է տալիս անհատի ազատության ու զարգացման համար:

Եվրոպայի անվտանգության և համագործակցության խորհրդակցության Եզրափակիչ ակտի ստորագրումից հետո առանձնապես ուժեղացած այդ հարձակումների նախաձեռնողներն ամեն կերպ փորձում են ստվերարկել սովետական իրականությունը, որպեսզի, մասնավորապես, ապացուցեն միջազգային հարաբերությունների հետագա նորմալացման «անհնարինությունը»: Նրանց դուր չի գալիս, որ ՍՄԿԿ-ն աշխատավորների իրավունքներն ըստ ամենայնի ընդլայնելու մասին հոգ տանելուց բացի, վերցրել է քաղաքացիների սոցիալական պատասխանատվությունը բարձրացնելու կուրսը, առանց որի չի կարելի պատկերացնել դեմոկրատիայի զարգացում:

Հարց է ծագում, իսկ ինչո՞ւ իմպերիալիստներն ու նրանց գաղափարական ապարատը վերջին տարիներին սկսել են այդպես «ջանալ» սոցիալիստական երկրների աշխատավորների բախտի համար, «հոգատարություն» ցուցաբերել նրանց նկատմամբ: Այստեղ կարող է միայն մի պատասխան լինել. բուրժուազիան ու նրա կողմնակիցները վախենում են սոցիալիզմի՝ առաջադեմ մարդկության այդ հենարանի, ուժերի անշեղ աճից, նրանց հարձակումները սոցիալիստական դեմոկրատիայի վրա պայմանավորված են ամենևին ոչ արդի կապիտալիստական հասարակարգի ուժով, այլ, ընդհակառակը, նրա թուլությամբ, իր բախտի նկատմամբ ունեցած վախով: Նրանք վախենում են դեռևս իմպերիալիզմի լծի տակ գտնվող ժողովուրդների վրա Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների ոգեշնչող օրինակի ազդեցությունից, ձգտում են խոչընդոտել ազգային-ազատագրական շարժման հետագա զարգացումը, կապիտալի առանձին երկրներում դասակարգային մարտերի վերաճումը՝ մասսայական հեղափոխական վերելքի:

Եթե խորամուխ լինենք «սոցիալիզմի բարելավման» ամեն տեսակ դեղատոմսերի էության մեջ, ապա հասկանալի կդառնա դրանց իսկական իմաստը. խոսքն անպայման նոր կարգի այնպիսի մի «տարատեսակության» մասին է, որտեղ չկա բանվոր դասակարգի և կոմունիստական կուսակցության ղեկավար դերը, չկան դեմոկրատական ցենտրալիզմ, պրոլետարական ինտերնացիոնալիզմ: Որոշ «քննադատներ» այդ մասին ասում են ուղղակի, մյուսները՝ քողարկված ձևով, պայքարելով կուսակցությունից պետական և հասարակական կազմակերպությունների ինչ-որ անկախության համար, քարոզելով տնտեսական և այլ գործերին նրա չմիջամտելու գաղափարներ: Հենց այդպիսի «կատարելագործված մոդելի» համար, երբ իր հիմնարար սկզբունքներից զրկված սոցիալիզմը փաստորեն դադարում է սոցիալիզմ լինելուց, բուրժուազիայի գաղափարախոսները պատրաստ են ճանաչելու գոյության իրավունք:

Հասարակության մեջ բանվոր դասակարգի առաջատար դիրքի հարցը, նրա ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության ղեկավար դերի հարցը երբեք տակտիկայի հարց չի եղել և չի լինի: Դա քաղաքական ստրատեգիայի, սոցիալիզմի բուն էության հարցն է:

Կոմունիստական ավանգարդի դերը հետևողականորեն աճում է սոցիալական առաջադիմության բարձունքներով ընթացող հասարակության շարժման վերելքին զուգընթաց՝ սկսած հեղափոխության հաղթանակից մինչև սոցիալիզմի լրիվ հասունության հասնելը և մինչև կոմունիզմի կառուցումը: Եվ որքան ավելի հուժկու է ժողովրդի ստեղծարար գործունեության թափը, այնքան ավելի բարդ են այն խնդիրները, որ ստիպված է լուծել հասարակությունը, այնքան ավելի բարձր են կուսակցության՝ բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների քաղաքական ղեկավարի դերն ու պատասխանատվությունը: Այս է հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունը, այն սկզբունքը, որին անշեղորեն հետևելու համար մենք լի ենք վճռականությամբ: Եվ ոչ ոքի չի հաջողվի մեզ շեղել դրանից:

Դեմոկրատիայի «մաքուր», «մարդասիրական» «մոդելների» ժամանակակից կոնցեպցիաներն ուղղված են պրոլետարիատի դիկտատուրայի, հասարակության մեջ բանվոր դասակարգի առաջատար դերի վերաբերյալ լենինյան

ումունքի դեմ։ Այսօր, ինչպես, ի դեպ, և շատ տարիներ առաջ, Կ. Կաուցկու ժամանակներում, կարելի է դատողություններ լսել այն մասին, թե իբր պրոլետարիատի դիկտատուրան անհամատեղելի է դեմոկրատիայի հետ, ժխտում է այն։ Իսկ իրականության մեջ պրոլետարիատի դիկտատուրան երբեք իսկական դեմոկրատիայի հակոտնյան չի եղել և չի կարող լինել։ Իր ժամանակ Լենինը վճռականորեն հանդես եկավ դեմոկրատիայի և դիկտատուրայի հասկացությունները հակադրելու դեմ, մերկացրեց բուրժուական և օպորտունիստական տեսությունների ֆիկտիվ բնույթը, ցույց տվեց, որ «դեմոկրատիան նույնպես «բնակչության մի մասի տիրապետությունն է մյուսի նկատմամբ», նույնպես պետություն է» (Երկեր, հ. 23, էջ 64)։ Խոսակցություններն այն մասին, որ պրոլետարիատի դիկտատուրան հակասում է դեմոկրատիային, եղել են ու մնում են լոկ որպես բառախաղ, որը հաճախ ձգտում է քողարկել ժամանակակից բուրժուական դեմոկրատիայի էությունը, որն իրականում միշտ մոնոպոլիաների դիկտատուրան է, և խեղաթյուրել քաղաքական իշխանության բնույթը սոցիալիզմի օրոք։

Ինչպես վկայում է ՍՍՀՄ-ի և մյուս եղբայրական երկրների պատմական փորձը, իշխանության ամրացումը բանվոր դասակարգի ու նրա դաշնակիցների ձեռքում վիթխարի առաջընթաց քայլ է մարդկության սոցիալ-քաղաքական զարգացման մեջ։ Կապիտալիզմից դեպի սոցիալիզմ անցման ժամանակաշրջանի այս օբյեկտիվ օրինաչափությունը սոցիալիզմի կառուցման, նրա նվաճումների հաջող պաշտպանության ու խորացման պարտադիր պայմանն է։ Միևնույն ժամանակ բանվոր դասակարգի հաստատումը որպես հեղափոխական վերափոխումների առաջատար ուժի՝ նշանակում է որակապես նոր փուլ դեմոկրատիայի զարգացման մեջ, դրա բարձրագույն դրսևորում։ «Հենց այն մասսաները,— մատնանշում էր Լենինը,— որոնք նույնիսկ ամենադեմոկրատական բուրժուական հանրապետություններում, ըստ օրենքի իրավահավասար լինելով, իրականում հազար ու մի եղանակներով և խորամանկություններով հեռացվում էին քաղաքական կյանքին մասնակցելուց և դեմոկրատական իրավունքներից ու ազատություններից օգտվելուց, ներկայումս ներգրավվում են պետության դեմոկրատական կառավարման մեջ մշտական և անպայման, ընդսմին վճռողական մասնակցության» (Երկեր, հ. 28, էջ 605—606)։ Կառավարմանն աշխատավորների մասնակցության հնարավորություններն անչափ ընդլայնվում են պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը համաժողովրդական պետության վերաճելու հետ, զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում։

Սոցիալիստական դեմոկրատիայի բնորոշ գիծն այն է, որ ժողովուրդը իշխանության իրականացմանը մասնակցում է ոչ միայն պետական մարմինների միջոցով, այլև մասսայական հասարակական կազմակերպությունների՝ արհմիությունների, կոոպերացիայի, կոմերիտմիության, ստեղծագործական միությունների, ինչպես նաև բնակչության հասարակական ինքնագործունեության մարմինների ճյուղավորված ցանցի միջոցով։ Ավելի ու ավելի նկատելի զարգանում են անմիջական դեմոկրատիայի ինստիտուտները։ Բանվորական և կոլտնտեսային ժողովները, մշտական գործող արտադրական խորհրդակցությունները, ձեռնարկությունների և միավորումների ղեկավարների, մինիստրությունների ղեկավար աշխատողների հաշվետվություններն անմիջականորեն աշխատանքային կոլեկտիվների առջև, օրենքների և այլ որոշումների նախագծերի լայն քննարկումը, քաղաքացիների ժողովները բնակավայրում, գյուղական ժողովները՝ համապետական և տեղական կյանքի հարցերի լուծմանն աշխատավորների մասնակցության կարևոր ձևերն են։

Այս ամենը սոցիալիստական դեմոկրատիզմի ռեալ նվաճումներն են, մեր դեմոկրատիայի զարգացման ու կատարելագործման կոնկրետ ուղղությունները՝ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների առումով։

Վերացնելով արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, սոցիալիզմը դրանով իսկ վճռական քայլ է կատարում աշխատավորների ազատագրման գործում, լավագույն պայմաններ ստեղծում մարդու գոյության հիմ-



քերի իսկական հիմքի՝ էկոնոմիկայի համակողմանի զարգացման համար, որը, ինչպես ընդգծում էր Լենինը, իրականում գլխավորն է իսկական դեմոկրատիզմի ձևավորման ու զարգացման մեջ։ Սոցիալիստական հասարակարգի պայմաններում ընդլայնվում և խորանում է դեմոկրատիայի, եթե կարելի է այսպես ասել՝ բուն նյութական բազան, ռեալ պայմաններ և նախադրյալներ են ստեղծվում քաղաքացիների իրավունքների ու ազատությունների առավել լրիվ ու երաշխավորված իրականացման համար։

Դեմոկրատիան, իր հերթին, առավելապես խորն ու անմիջականորեն է թափանցում ժողովրդական տնտեսության բոլոր օղակները, կարծես ներսից աստիճանաբար վերափոխելով սոցիալիստական էկոնոմիկայի դեմքը։ Մենք ելնում ենք այն բանից, որ դեմոկրատիան դատարկ հնչյուն է, եթե այն չի ընդգրկում այն միջավայրը, որտեղ ամեն օր աշխատում է մարդը, կիրառում իր ստեղծագործական ուժերը։ Ուստի, ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, «սկզբունքային նշանակություն ունի դեմոկրատական հիմունքների ամրապնդումն անմիջականորեն արտադրության մեջ»։

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի կենսագործումը, էկոնոմիկայի ու պլանավորման կառավարման հետագա կատարելագործումը, որին և նպատակամղում է մեզ ՍՄԿԿ XXV համագումարը, ամենասերտ կերպով կապված են դեմոկրատիայի հետևողական զարգացման հետ։ Իններորդ հնգամյա պլանի առաջադրանքների հաջող իրագործումը, տասներորդ հնգամյակի կատարման համար ծավալված պայքարը կյանքի կոչեցին սոցիալիստական կարգի ընդերքում եղած հզոր ուժեր ու ռեզերվներ։ Հենց աշխատավորների նախաձեռնության ու ստեղծագործական ակտիվության բարձրացման մեջ էր կուսակցությունը տեսնում և հիմա էլ տեսնում է սոցիալիզմի, սոցիալիստական էկոնոմիկայի, պլանային տնտեսության առավելությունների առավել լրիվ օգտագործման բանալին։

Այն, ինչ արդեն ձեռք է բերվել աշխատավորներին արտադրության կառավարման մեջ ներգրավելու գործում, հասուն սոցիալիստական դեմոկրատիայի հիրավի աչքի ընկնող նվաճում է։ Ձևավորվել ու պրակտիկայում լայնորեն կիրառվում են արտադրության կառավարման այնպիսի ձևեր, ինչպես աշխատանքը հասարակական կազմակերպությունների ընտրովի մարմիններում, մասնակցությունը մշտապես գործող արտադրական խորհրդակցություններին, բանվորական ժողովներին, կոնֆերանսներին, տարբեր բնույթի (վարպետ-դաստիարակների, երիտասարդ բանվորների, գիտատեխնիկական և այլն) հասարակական խորհուրդներին։

Մենք կարող ենք վստահությամբ ու հպարտությամբ ասել, որ մեզ մոտ դաստիարակվել է մարդկանց մի վիթխարի բանակ, որոնք պարզ պատկերացնում են իրենց տեղն աշխատանքային պրոցեսում, լավ գիտակցում իրենց պարտականություններն ու պատասխանատվությունը, խելացիորեն, տնտեսվարորեն են վերաբերվում արտադրության գործերին, արդյունավետորեն ու գործիմացորեն մասնակցում դրանց կառավարմանը։ Այսպիսին է սոցիալիստական իրականությունը, այսպիսին է սոցիալիստական ապրելակերպը, որոնք ձևավորում են աշխատողի սոցիալականորեն նոր տիպը, որի համար, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը Լիխաչովի անվան ավտոգործարանի բանվորների հետ ունեցած հանդիպման ժամանակ, «քիչ է լինել պարզապես աշխատասեր և կարգապահ, նրանից պահանջվում է նաև ակտիվ, բուռն հետաքրքրություն և հոգատարություն ընդհանուր գործի նկատմամբ, ձգտում, որ այդ գործը առավել լավ ընթանա թե՛ բրիգադում, թե՛ արտադրամասում, թե՛ ամբողջ ձեռնարկությունում»։

Մեր հասարակության դեմոկրատիզմի բարձրագույն դրսևորումներից մեկն էլ սոցիալիստական մրցությունն է։ Տարեցտարի աճում են նրա թափն ու արդյունավետությունը, նորանոր միլիոնավոր սովետական մարդիկ են ներգրավվում այդ հայրենասիրական շարժման մեջ։ Աշխատավորների լայն մասնակցությունը պարտավորությունների մշակմանը, դրանց կատարման կազմակերպմանը, հրապարակայնությունը, արդյունքների համադրելիությունը,

փոխօգնությունը՝ սրանք են սոցիալիստական մրցության դեմոկրատական սկզբունքները։ Ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման հետագա բարելավման, արտադրության հստակ կազմակերպման հետ զուգակցված, արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, գյուղատնտեսության աշխատողների աշխատանքային մրցությունը տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման հաստատ գրավականն է։

Դինամիկ է նոր հնգամյակի մեկնարկը։ Այդ մասին են համոզիչ կերպով վկայում այս տարվա անցած ամիսներին արդյունաբերության աշխատանքի մասին եղած տվյալները։ Հաջողությամբ կատարվում և գերակատարվում են արտադրանքի իրացման ընդհանուր ծավալի, աշխատանքի արտադրողականության աճի և կարևորագույն արտադրատեսակների մեծ մասի թողարկման առաջադրանքները։ Հնգամյակի սկիզբը հիանալի նվաճումներով են նշանավորել գյուղատնտեսության աշխատողները։ Հողագործները կարողացան աճեցնել ու հավաքել հացահատիկի, բամբակի և գյուղատնտեսական մի շարք այլ կուլտուրաների լավ բերք։ Ընդլայնվում է միլիոնների շարժումը՝ «Աշխատել առանց ետ մնացողների, արդյունավետ, բարձր որակով» նշանաբանով։ Ամենուրեք աշխատավորներն ստանձնում են լարված հանդիպական պլաններ։ Այս ամենը սովետական մարդկանց աշխատանքային խանդավառության, հայրենասիրության սքանչելի օրինակներ են, մրցության ծանրակշիռ արդյունքները գործողության մեջ։

Մեր պայմաններում սոցիալիստական մրցությունը բազմանշանակորեն և մեծ ուժով է ներգործում ամբողջ հասարակական պրակտիկայի վրա, ծառայում է ոչ միայն աշխատանքի արտադրողականության վերելքին, այլև հոգևոր արժեքների բազմապատկմանը։ Մրցությունը մարդկանց մեջ հաստատում է ձգտում՝ իրենց վրա պատասխանատվություն վերցնել ժողովրդական տնտեսության, կուլտուրական շինարարության, պետության կառավարման համար։ Մրցության ընթացքում կարծես միաձուլվում է աշխատանքային և քաղաքական ակտիվությունը, և այդ հիման վրա ձևավորվում սովետական մարդկանց հատուկ բարձր քաղաքացիականությունը։ Հենց սոցիալիստական մրցության մեջ են կոփվում կոմունիզմ կառուցողի բնավորության, հոգևոր կերպարի այն հիանալի կողմերը, որոնցով այսօր հիանում է ամբողջ աշխարհը։

Սոցիալիստական դեմոկրատիան զարգանում և կատարելագործվում է ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում։ Դրանք երկուսն էլ համաշխարհային պատմության գլխավոր պրոցեսի՝ դեպի մարդկային քաղաքակրթության բարձրագույն ձևերն առաջընթաց շարժման կարևորագույն բաղադրամասերն են։ Եվ եթե կապիտալիզմի օրոք գիտության ու տեխնիկայի զարգացումը նոր ուժով է երևան հանում մասնավոր սեփականության և շահագործման վրա հիմնված հասարակարգի խոցերը, նրա հակամարդասիրական էությունը, տանում է դեպի պետական ապարատի ավելի ու ավելի մեծ խզում ժողովրդից, ապա սոցիալիզմի օրոք գիտատեխնիկական հեղափոխությունը ոչ միայն չի կասեցնում, այլ, ընդհակառակը, ենթադրում է մասսաների ստեղծագործական ակտիվության հետևողական զարգացում, օբյեկտիվորեն պայմանավորում է նոր քայլեր դեմոկրատիզմի ծավալման գործում։ Իսկական դեմոկրատիայի պայմաններում գիտության ու տեխնիկայի առաջընթացը ծառայում է մարդկային վեհ իդեալներին, համակվում է մարդասիրական, բարոյական բարձր բովանդակությամբ։ Տեղի է ունենում գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների և սոցիալիզմի պատմական առավելությունների ավելի ու ավելի սերտ միացում, որն աշխարհին տալիս է կյանքի ու աշխատանքի անցյալում չտեսնված ձևեր։ Այսպիսով, ինքը՝ սոցիալիստական իրականությունը, գիտատեխնիկական հեղափոխությունն ու դեմոկրատիան դարձնում է մերձավոր դաշնակիցներ։

Արդի պայմաններում դեմոկրատիայի և գիտատեխնիկական առաջընթացի փոխգործողությունը զարգացած սոցիալիզմին ներքուստ հատուկ ավելի խոր պրոցեսի արտացոլումն է։ Խոսքը հասարակական կյանքի բոլոր ոլորտների, գործունեության տարբեր տեսակների ամենասերտ օրգանական փոխադարձ



կապի մասին է, նրանց փոխադարձ պայմանավորվածության մասին։ Այսպես, արդյունաբերության, գյուղատնտեսության հաջողությունները չի կարելի պատկերացնել առանց գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների հմուտ օգտագործման, առանց սովետական մարդկանց կենսամակարդակի հետագա բարձրացման։ Իր հերթին, գիտությունն անխզելիորեն կապված է արտադրության հետ և այնքան ավելի ակտիվորեն է նպաստում նրա զարգացմանը, ծառայում մարդուն, որքան ավելի լրիվ չափով է հենվում հասարակության կուտակած տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական պոտենցիալի վրա։

Մարդկանց կյանքի նյութական և հոգևոր հիմունքների, արտադրության և սպառման, սոցիալական կազմակերպության և անձնական կենսագործունեության հիմքերի, մեր տնտեսական մեխանիզմի և հասարակական սիստեմի տարբեր կողմերի միջև օրգանական կապի ու համաձայնեցվածության, ներքին բարձր ներդաշնակության ապահովումը սոցիալիզմի պատմական միսիան է, որը այն կատարում է հաջողությամբ։ Մեր օրերի պրակտիկան համոզիչ կերպով հաստատում է, որ այդ միացումը հիմնականում կատարվում է բուն հասուն սոցիալիզմի պայմաններում։

Դեմոկրատիայի զարգացումը նշանակում է սոցիալիստական կարգի հումանիստական էության հետագա խորացում, որն ամենից ավելի վառ կերպով դրսևորվում է մարդու նկատմամբ ցուցաբերվող համակողմանի ուշադրության մեջ, ժողովրդական բարեկեցության բարձրացման, աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, առողջապահության, կրթության, կուլտուրայի առաջընթացում, այն ամենի մեջ, ինչը նպաստում է անհատի ձևավորմանն ու բարգավաճմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը։

Միևնույն ժամանակ աշխատավորների նյութական և հոգևոր պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարումն առանձին ուժով բարձրացնում է մարդու և հասարակության կյանքում բարոյական արժեքների պրոբլեմը։ Իհարկե, մենք կողմնակից ենք նյութական պահանջների խելացի ու արդարացի բավարարման՝ որպես լիարժեք մարդկային գոյության անհրաժեշտ պայմանի։ Բայց մենք մերժում ենք նյութական բարիքների վերածումը ինքնանպատակի, վճռականորեն հանդես ենք գալիս ստրկաբար իրերին երկրպագելու դեմ, ժամանակակից քաղքենիության բոլոր ձևերի դեմ, սպառողականության, գռփողականության, ընչաքաղցության տենդենցների նկատմամբ հասարակական անհանդուրժողականության մթնոլորտ ստեղծելու կողմը։ Հետևողական պայքարը նման տիպի երևույթների դեմ համապատասխանում է մեր կուսակցության ավանդույթներին, սոցիալիստական դեմոկրատիզմին, ժամանակի ոգուն և պահանջներին, առողջացնում է հասարակական գիտակցությունն ու բարոյականությունը, ակտիվորեն նպաստում աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը։

Սոցիալիզմը նոր ձևով է դնում և լուծում դեմոկրատիայի կարևորագույն պրոբլեմներից մեկը՝ անձի, իրավունքների ու ազատությունների, պարտականությունների ու պատասխանատվության պրոբլեմը։ Այն հաղթահարում է անհատի վաղեմի օտարացումը հասարակությունից, կոլեկտիվից, չտեսնված հնարավորություններ է ստեղծում նրա ընդունակությունների ու տաղանդի համակողմանի զարգացման համար։ Անհատի և հասարակության արմատական շահերի համընկնումը իսկական հեղաշրջում է առաջ բերում մարդկանց կյանքում։ Ավելի ու ավելի է ամրապնդվում անձնական կյանքի հասարակական նշանակության գիտակցումը, հարստանում է նրա բովանդակությունը։

Սոցիալիստական հասարակարգի պայմաններում «ծանրության կենտրոնը ազատությունների ձևական ճանաչումից (ինչպես եղել է բուրժուական պառլամենտարիզմի ժամանակ) փոխադրվում է շահագործողներին «տապալած աշխատավորների համար ազատություններից օ գ տ վ ե լ ու կողմը...» (Երկեր, հ. 27, էջ 175)։ Լենինյան այս խոսքերում արտահայտված է գործի էությունը, սոցիալիստական և բուրժուական դեմոկրատիայի արմատական տարբերությունը։ Խոսքը աշխատավորների իրական, լայն ու ռեալ իրավունքների մասին է, որ նրանց տալիս է նոր կարգը, այն է՝ աշխատանքի, հանգստի, կր-

թության, բժշկական սպասարկման իրավունքի, ծերության ժամանակ կամ աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովության իրավունքի մասին։ Աշխատավորներին ի սպաս դնելով իր բոլոր հնարավորություններն ու ռեսուրսները, սոցիալիզմը շարունակ ձգտում է, որպեսզի լիակատար համապատասխանություն լինի հռչակվող և իրականում տրվող իրավունքների միջև։ Իսկ կապիտալիզմն ավելի մեծ չափով հոգում է արտաքին փայլի, իր հաստատությունների արտաքին պատկառելիության մասին։ Իսկ թե իրականում ինչ է թաքնված «ազատ աշխարհի» դեմոկրատիայի ցուցափեղկերում ցուցադրված մանեքենների վառ գույների ու փայլի տակ, բուրժուազիան միանգամայն հասկանալի պատճառներով ցույց չի տալիս։

Կապիտալիզմի շարունակ խորացող ընդհանուր ճգնաժամի ազդեցության ներքո բուրժուական քաղաքական շատ գործիչներ, գիտնականներ, հրապարակախոսներ հաճախ ստիպված են խոստովանել այն ծանր դրությունը, որի մեջ այժմ հայտնվել են բուրժուական դեմոկրատիզմի հաստատությունները, խոսում են դեմոկրատիայի «խեղդամահության» և նույնիսկ «ինքնասպանության» մասին, շատ մռայլ կանխատեսումներ անում ապագայի վերաբերյալ։

Գնալով ավելի մեծ չափով է իրեն վարկաբեկում «ժողովրդական ներկայացուցչության» բուրժուական սիստեմը. ռեալ իշխանությունն ավելի մեծ չափով է պառլամենտներից անցնում իշխանության գործադիր մարմինների ձեռքը, որոնք ամենասերտ կերպով կապված են մոնոպոլիաների, ռազմա-արդյունաբերական խմբավորումների հետ. բուրժուական ընտրությունները հաճախ ուղեկցվում են հակաօրինական մեքենայություններով, չարաշահումներով ու կաշառակերությամբ։ Սոցիալական շատ իրավունքներ, և ամենից առաջ աշխատանքի, կրթության, բժշկական սպասարկման իրավունքն առաջվա նման մնում են չիրականացված, մի շարք երկրներում լայնորեն տարածվել են ռասայականությունն ու ռեակցիոն նացիոնալիզմը՝ իրենց առավել այլանդակ դրսևորումներով։ Անձի անձեռնմխելիությունը, որի մասին առանձնահատուկ ջերմեռանդությամբ ու կեղծավորությամբ է խոսում բուրժուական պրոպագանդան, ոստիկանության, բուրժուական պետական մեքենայի մյուս ճնշիչ մարմինների մշտական ոտնձգությունների օբյեկտ է։

Վերջին տարիներին բուրժուազիան, բանվոր դասակարգի, առաջադիմական ուժերի ճնշման տակ, ստիպված է կիրառել աշխատավորներին շահագործելու և ճնշելու ավելի նուրբ ու քողարկված ձևեր, դիմել որոշ զիջումների, կիրառել առանձին ռեֆորմներ, ժամանակ առ ժամանակ նորացնել ավելի ու ավելի նկատելի ճեղքվածքներ տվող բուրժուական դեմոկրատիայի ճակատը։ Առաջադիմական ուժերը կոմունիստների գլխավորությամբ, հակառակ կառավարող շրջանների կամքի, ձգտում են բուրժուադեմոկրատական այս կամ այն հաստատությունն օգտագործել աշխատավորների օգտին։ Սակայն պրակտիկայում, մոնոպոլիաների տիրապետության պայմաններում, աշխատավորների քաղաքական կուսակցությունները, օրինակ, ստանալով ընտրողների զգալի թվով ձայներ, փաստորեն զրկված են կառավարությանը մասնակցելու հնարավորությունից։

Միևնույն ժամանակ բուրժուազիան, որը դեմոկրատիան ու մարդու իրավունքները խոսքով հռչակում է որպես գլխավոր ունեցվածք, իրականում պատրաստ է իր տիրապետությանը սպառնալիք առաջանալու դեպքում հրաժարվել դրանցից, ոտնակոխ անել, իսկ հաճախ նաև խեղդել արյան մեջ, որի մասին և վկայում Չիլիի ողբերգությունը։

Լինելով մասսաների կենդանի ստեղծագործության արդյունք, սոցիալիզմը հենց այդ մասսաներին բարձրացնում է պատմության կողմից նոր հասարակության առջև դրվող վիթխարի խնդիրների մակարդակին, անչափ ուժեղացնում է նրանց դերն ու ազդեցությունը բոլոր, այդ թվում և միջազգային գործերում։ «Դեմոկրատիայի ամենամեծ արտահայտությունը,— շեշտում էր Լենինը,— դա հիմնականում պատերազմի և խաղաղության հարցն է» (Երկեր, հ. 30, էջ 404)։ Այս խոր մտքի լույսի տակ շատ հստակորեն կարելի է դիտել ուժերի սահմանազատումը միջազգային ասպարեզում։ Մեր օրերում, թերևս,



ավելի շատ, քան անցյալում երբեք, երևան է գալիս դեմոկրատիայի և խաղաղության ձգտումների միջև եղած անմիջական կապը։ Ժողովուրդներն ակնբախ կերպով համոզվել են, որ իսկական դեմոկրատիայի համար պայքարող մարտիկները խաղաղասեր ուժերի կորիզն են կազմում։ Իսկ նրանք, ովքեր հանդես են գալիս լարվածության թուլացման դեմ, «սառը պատերազմի» ժամանակներին վերադառնալու օգտին, հակաժողովրդական ռեժիմների հովանավորողներն ու դաշնակիցներն են, դեմոկրատիայի սահմանափակումների կատաղի պաշտպանները։

Իմպերիալիստական ռեակցիան ներկա դարի ընթացքում երկու անգամ մարդկությանը նետել է նրա պատմության մեջ ամենասարսափելի համաշխարհային պատերազմների մեջ, որոնք խլել են տասնյակ միլիոնավոր կյանքեր, բազմիցս ագրեսիաներ է սանձազերծել Եվրոպայում, Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում, աջակցել է ֆաշիստական ռեժիմների հաստատմանը, մասսայական ցեղասպանությանը, այժմ պաշտպանում է չիլիական խունտային, օգնում է իսրայելական էքսպանսիոնիստներին, պայքարում է ազատագրական շարժման դեմ աֆրիկյան մայրցամաքի հարավային մասում։ Այսօր միլիտարիզմի ու ռեակցիայի ամենամութ ուժերը մշակում են մարդկության համար վտանգավոր պլաններ, կանգնած են հակահեղափոխական դավադրությունների կուլիսների ետևում, ձգտում են՝ ձախողելու լարվածության թուլացումը, անվստահություն և թշնամանք սերմանելու պետությունների միջև։

Հետևողականորեն ուժեղացնելով խաղաղ հարձակումը, հաղթահարելով լարվածության թուլացման հակառակորդների դիմադրությունը, ՍՄԿԿ-ն և սովետական պետությունն ընդլայնում են իրենց արտաքին քաղաքական գործունեության ճակատը, կոնկրետացնում նրա խնդիրները, ջանքեր չեն խնայում միջազգային գործերում երկրների միջև նոր փոխհարաբերություններ հաստատելու համար՝ հանուն կայուն, արդարացի, դեմոկրատական խաղաղության։

Մեծ Հոկտեմբերն ընդմիշտ ի մի է ձուլել «խաղաղություն» և «սոցիալիզմ» հասկացությունները, դրանք դարձրել մեր դարաշրջանի դրոշը։ Պատերազմի և խաղաղության պրոբլեմի նկատմամբ մոտեցման գործում ինքը՝ կյանքը, նշել է որոշակի ջրբաժան գիծ. դրա մի կողմում կանգնած են դեմոկրատիայի և պրոգրեսի ուժերը, մյուս կողմում՝ իմպերիալիզմի և ռեակցիայի ուժերը։ Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների կոնֆերանսը որոշակիորեն ցույց տվեց, որ խաղաղության և պրոգրեսի ապագան գտնվում է հուսալի ձեռքերում, որ հենց կոմունիստներն են հանդես եկել ու հիմա էլ հանդես են գալիս որպես խաղաղության, անվտանգության, համագործակցության և սոցիալական պրոգրեսի համար պայքարող հետևողական ու տոկուն մարտիկներ ինչպես եվրոպական մայրցամաքում, այնպես էլ մոլորակի մյուս մասերում։

Խաղաղ գոյակցությունն այսօր ոչ թե պարզապես առանց պատերազմի աշխարհ է։ Այս հայտնի հասկացությունն անչափ հարստացել է, լցվել նոր բովանդակությամբ։ Խոսքը միջազգային հարաբերությունների նոր սիստեմ ստեղծելու մասին է, որն ազատ ասպարեզ է բաց անում սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների գործողության համար և կոչված է նպաստելու մեծ ու փոքր, տնտեսական տեսակետից ավելի զարգացած ու սակավ զարգացած բոլոր պետությունների գործարար, փոխշահավետ համագործակցությանը։ Նման սիստեմը պետք է ապահովի բոլոր ժողովուրդների իրավունքների ու շահերի պաշտպանությունը, կաշկանդի իմպերիալիստական ագրեսիան, ամեն կերպ նպաստի մարդկության առջև կանգնած սոցիալական պրոբլեմների լուծմանը։ Արդի դարաշրջանի արմատական ռեալություններին համապատասխանող հենց այդպիսի հիմքերի վրա պետք է կառուցվի իսկական դեմոկրատական և արդարացի խաղաղության շենքը։ Ահա արդեն բազում տասնամյակներ մեր կուսակցությունը համառորեն ու հետևողականորեն պայքարում է այդ վեհ ու ազնիվ նպատակին հասնելու համար։

Համաշխարհային ասպարեզում պետությունների փոխհարաբերություններում դեմոկրատիզմի բարձրագույն դրսևորումը խաղաղության և միջազգային համագործակցության համար, ժողովուրդների ազատության և անկախության համար մղվող հետագա պայքարի ծրագիրն է, որն առաջադրել է ՍՄԿԿ XXV համագումարը: Այդ ծրագրի մեջ շեշտված է, առաջին հերթին, այնպիսի հասունացած խնդիրների լուծման անհրաժեշտությունը, ինչպիսիք են սպառազինությունների մրցավազքի դադարեցումը, մնացած պատերազմական օջախների վերացումը, լարվածության թուլացման խորացումը, հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների իրավահավասար և փոխշահավետ համագործակցության զարգացումը, միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու վերաբերյալ համաշխարհային պայմանագրի կնքումը և այլն:

Կուսակցության արտաքին քաղաքական գործունեությունը, ինչպես շեշտում է Լ. Ի. Բրեժնևը, համաժողովրդական գործ է: Այն հենվում է երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության վրա, նրա հոգևոր պոտենցիալի վրա, սովետական ժողովրդի աշխատանքով ստեղծված ամեն ինչի վրա: Տնտեսական և սոցիալական զարգացման այն հսկայական խնդիրները, որ դրեց ՍՄԿԿ XXV համագումարը, նորից ողջ մարդկության առջև ցուցադրեցին սովետական ժողովրդի խոր շահագրգռվածությունը խաղաղ ստեղծարար աշխատանքի համար: Իր ողջ միջազգային հսկայական հեղինակությունը, իր ողջ ազդեցությունը Սովետական Միությունն ի սպաս է դնում համայն աշխարհի խաղաղության ամրապնդման գործին, դեմոկրատիայի և սոցիալական պրոգրեսի գործին:

## ՍՈՎԵՏՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԻ ՄԱՐՄՆԱՎՈՐՈՒՄՆ ԵՆ

Մեր կուսակցությունը, հետևողականորեն աշխատելով սովետական սոցիալիստական դեմոկրատիայի, ժողովրդի լիիշխանության ապահովման ուղիների ու ձևերի կատարելագործման վրա, առաջնահերթ ուշադրություն է նվիրում աշխատավորների դեպուտատների սովետներին: Ծնված լինելով որպես հեղափոխական պրոլետարական գործողության մարմիններ, սովետները Հոկտեմբերի հաղթանակի հետ դարձան նոր պետական կարգի քաղաքական հիմքը: Մարմնավորելով սոցիալիզմի վերափոխիչ ուժը, նրանք մի ամբողջ դարաշրջան բացեցին պետականության և դեմոկրատիայի զարգացման բազմադարյան պատմության մեջ:

Կենսագործելով կուսակցության քաղաքականությունը, իրականացնելով ամբողջ լիիրավ պետական իշխանությունը, սովետներն իրենց էությամբ ժողովրդի օրգաններն են, որոնց ողջ գործունեությունն ամբողջապես ենթարկված է նրա կարիքներին ու շահերին: Սովետների իսկական ժողովրդական իմաստն այն է, ինչպես քանիցս նշել է Լենինը, որ նրանք կազմվում են աշխատավորների ներկայացուցիչներից, որոնց ազատ կերպով ընտրում են մասսաները և ցանկացած ժամանակ փոխարինում ուրիշներով, իրենց ձեռքում են կենտրոնացնում ոչ միայն օրենսդրական իշխանությունը և վերահսկողությունը օրենքների կատարման նկատմամբ, այլև դրանց անմիջական իրականացումը, ապահովում են սերտ կապն ամենաբազմապիսի պրոֆեսիաների աշխատողների հետ, պետության կառավարմանն ինքնուրույն մասնակցելու համար ոտքի են հանում աշխատանքի տասնյակ միլիոնավոր մարդկանց: Ուստի, երբ խոսում ենք սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ուղիների մասին, ապա ամենից առաջ նկատի ունենք սովետների՝ որպես մեր ժողովրդի ամենամասսայական, ամենաներկայացուցչական մարմինների, իրավազոր ֆունկցիաների հետևողական զարգացումն ու կատարելագործումը:

Հանդես գալով կուսակցության VII համագումարում, 1918 թվականի մարտին, Համառուսաստանյան Կենտգործկոմի նախագահ Յա. Մ. Սվերդլովն ասաց. «Մեր կուսակցությունն իր ամբողջ հոգին դրել է սովետների մեջ, սովետների միջոցով և սովետներում է նա տարել իր գլխավոր աշխատանքը»:



Եվ հիմա, գրեթե վեց տասնամյակ անց, հենց կոմունիստական կուսակցության ղեկավարությունն է ժողովրդական իշխանության մարմինների ձգողության ուժի ու բարձր հեղինակության, նրանց ողջ գործունեության հետևողական բարելավման վճռական գործոնը:

Վերջին 10—15 տարում կուսակցությունն առանձնապես մեծ աշխատանք է տարել սովետներն ակտիվացնելու նպատակով: Դրա շնորհիվ նկատելիորեն ուժեղացել է իշխանության ներկայացուցչական մարմինների ազդեցությունը հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա, ընդլայնվել ու խորացել է նրանց գործունեության բովանդակությունը, ամրապնդվել են կապերը մասսաների հետ, ավելի բազմակողմանի է դարձել դեպուտատների աշխատանքը: Եթե հանրագումարի բերենք այն, ինչ արդեն արվել է, կարելի է ամենայն որոշակիությամբ ասել՝ կուսակցության հոգատարությունը սովետների նկատմամբ, ընդունված որոշումների իրագործումը հնարավորություն տվեցին պետական իշխանության մարմինների աշխատանքը բարձրացնել որակապես նոր աստիճանի:

Կարևոր նշանակություն ունեցան ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի նախաձեռնությամբ ընդունված այն օրենքները, որոնք ընդլայնեցին գյուղական ու ավանային, շրջանային ու քաղաքային սովետների իրավունքներն ու նյութական հնարավորությունները: Անցած ժամանակամիջոցում կուտակված փորձը ցույց տվեց, որ դա միանգամայն ճիշտ է արվել: Տեղական սովետների աշխատանքը, ինչպես ասում են, նոր շունչ առավ: Կուսակցության XXIV համագումարի որոշումներին համապատասխան հրատարակված օրենքը դեպուտատների ստատուսի մասին հնարավորություն տվեց նկատելիորեն բարձրացնել նրանց ակտիվությունն ու նախաձեռնությունը սովետներում, ընտրողների պատվիրանների և աշխատավորների առաջարկությունների կատարման ուղղությամբ բնակչության շրջանում տարվող աշխատանքում:

Իսկ ռեալ կերպով այսօր ի՞նչ են ներկայացնում սովետները ժողովրդական իշխանության սկզբունքների մարմնավորման տեսակետից: Այդ մասին լավ է ասել Լ. Ի. Բրեժնևը Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների կոնֆերանսում՝ Բեռլինում. «Մեզ մոտ ավելի քան երկու միլիոն աշխատավորներ... պետական իշխանության կրողներն են, ընտրվում են սովետներում: Բայց դա բոլորը չէ, գրեթե 30 միլիոն սովետական քաղաքացիներ ներկայացնում են սովետների ակտիվը, որոնք կամովին և անշահախնդիր օգնում են պետական կառավարման մեծ ու բարդ գործում»: Իսկ հաշվի առնելով սովետների սիստեմատիկ նորացումը, նոր ու նոր միլիոնավոր աշխատավորների ներգրավումը նրանց գործունեության մեջ, կարելի է վստահությամբ ասել, որ սովետների միջոցով պետական կառավարման դպրոցն են անցնում զգալիորեն ավելի մեծ թվով մարդիկ: Հենց դա է սովետական դեմոկրատիզմի իրականությունը, մեր սոցիալիստական պրակտիկան:

Սոցիալիզմի օրոք իշխանության կազմակերպման իսկական համաժողովրդական բնույթի մասին է վկայում պետական մարմինների ձևավորման կարգը, որը բոլոր ընտրողներին ապահովում է դեմոկրատական հիմունքներով մասնակցությունն ընտրություններին: Սովետների դեպուտատները ընտրվում են քաղաքացիների կողմից՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա՝ գաղտնի քվեարկությամբ, ընտրություններին մասնակցում է երկրի գործնականորեն ամբողջ չափահաս բնակչությունը: Միևնույն ժամանակ կապիտալիստական երկրներում հաճախ նկատվում է ընտրողների որոշ պասսիվություն, որը գովաբանված բուրժուական դեմոկրատիայի հաստատությունների նկատմամբ քաղաքացիների իրական վերաբերմունքի, նրանց հոռետեսության, մոնոպոլիաների տիրապետության պայմաններում երկրի քաղաքական կյանքում որևէ արմատական փոփոխություն կատարելու հնարավորության նկատմամբ նրանց անվստահության ցուցանիշն է:

Սովետական սիստեմի դեմոկրատիզմը վառ կերպով դրսևորվում է դեպուտատական կորպուսի կազմի մեջ: Սովետներում ընտրված են սովետական հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի, երկրի բոլոր

ազգերի ու ազգությունների ներկայացուցիչները: Դեպուտատների ավելի քան 67 տոկոսն անմիջականորեն արտադրության մեջ զբաղված բանվորներ ու կոլտնտեսականներ են: Դեպուտատների թվում են նաև ձեռնարկությունների ու կազմակերպությունների առավել հեղինակավոր ղեկավարներ, ինժեներներ և գյուղատնտեսներ, բժիշկներ և ուսուցիչներ, գիտնականներ, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական աշխատողներ, զինծառայողներ: Բոլոր դեպուտատների մոտ կեսը կանայք են, մոտավորապես մեկ երրորդը՝ մինչև 30 տարեկան երիտասարդներ:

Սովետների ամբողջ գործունեությունն իրականացվում է բնակչության ամենալայն խավերի հետ անմիջական, կենդանի շփման մեջ: Աշխատավորների հետ իշխանության մարմինների կապերն ամրապնդելու համար կարևոր նշանակություն ունեն դեպուտատների կանոնավոր հաշվետվություններն ընտրողների առջև: Այսպես, անցյալ տարի իրենց աշխատանքի և սովետների աշխատանքի մասին հաշիվ են տվել գործնականորեն բոլոր դեպուտատները: Հաշվետվություններին նվիրված ժողովներին ներկա է եղել 126 միլիոն մարդ: Մասսաների հետ սովետների կապի ամրապնդմանը մեծապես նպաստում է նաև անմիջականորեն բնակչության առջև գործկոմների, նրանց բաժինների ու վարչությունների հաշվետվությունների տարածված պրակտիկան: Անցած տարում այդպիսով բնակչության առջև հաշիվ են տվել գրեթե բոլոր սովետների գործկոմները:

Աշխատավորների շահերի ու կարիքների նկատմամբ համակողմանի ուշադրության վկայությունն է սովետների բազմապիսի աշխատանքն այն պատվիրանների հետ, որ նախընտրական ժողովներում դեպուտատության իրենց թեկնածուներին տալիս են ընտրողները: Յուրաքանչյուր երկու տարին սովետները կատարման համար ընդունում են մոտ 800 հազար պատվիրան: Դրանց մեջ խտացված ձևով արտահայտված է սովետական մարդկանց հոգատարությունն իրենց պետության բարգավաճման, սովետական ապարատի աշխատանքի բարելավման, տնտեսական և կուլտուրական շինարարության մեծ ու փոքր հարցերի լուծման նկատմամբ: Սովետների, նրանց գործկոմների, ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների պարտքն է՝ ակտիվորեն ու հետևողականորեն աշխատել ընտրողների պատվիրանների իրականացման համար:

Մեր ներկայացուցչական սիստեմի դեմոկրատիզմի կարևոր ցուցանիշն է դեպուտատներին ետ կանչելու իրավունքը: Սահմանադրության համաձայն, այն դեպուտատը, որը չի արդարացրել իր ընտրողների վստահությունը, կարող է ցանկացած ժամանակ ետ կանչվել նրանց կողմից: Վերջին տասը տարում բոլոր օղակների սովետներից ետ են կանչվել ավելի քան 4 հազար դեպուտատներ:

Աշխատավորների դեպուտատների սովետներն իշխանության այն մարմիններն են, որոնք այդ իշխանությունն ամբողջությամբ իրականացնում են իրենց տերիտորիայում: Նրանք հաջողությամբ ու նպատակասլացորեն կենսագործում են կուսակցական կանխանշումները, ապահովում են իրենց բազմապիսի լիազորությունների համակողմանի ու որակյալ իրականացումը: Սովետներն ակտիվորեն ազդում են էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման վրա, չթուլացող ուշադրություն են դարձնում բնակչության համար ապրանքների արտադրության ավելացմանը, քաղաքների և գյուղերի բարեկարգմանը, ժողովրդական կրթության, առողջապահության, առևտրի, հասարակական սննդի ու կենցաղսպասարկման բարելավմանը: Սովետներին մեծ դեր է պատկանում տասներորդ հնգամյակի կատարման գործում: Կուսակցության XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումի առաջադրած խնդիրները պահանջում են իշխանության մարմինների աշխատանքի ոճի ու մեթոդների հետագա կատարելագործում, այն հաշվով, որ նրանք ավելի լրիվ իրականացնեն օրենսդրությամբ նախատեսված ֆունկցիաները, ավելի մեծ չափով ցուցաբերեն նախաձեռնություն և օպերատիվություն: Անհրաժեշտ է հետևողականորեն բարելավել սովետների կազմակերպական աշխատանքը,



ավելի վճռականորեն ծավալել թերությունների քննադատությունը, բարձրացնել պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի համար:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը երկրի տարբեր շրջաններից ստանում է քաղաքացիների ոչ քիչ բողոքներ այս կամ այն թերության մասին: Իրենց որոշակի մասով այդ բողոքները հիմնավորված են, սակայն տեղում լուծում չեն ստանում: Ուշագրավ է, որ կենտրոնի միջամտությունից հետո այդ բողոքների նշանակալի մասը բավարարվում են, ըստ որում, իրենց իսկ տեղական մարմինների ուժերով: Սա վկայում է այն մասին, որ որոշ աշխատողներ տեղերում միշտ չէ, որ օգտագործում են ունեցած հնարավորությունները, չեն ցուցաբերում անհրաժեշտ գործարարություն, պատասխանատվություն, հոգատարություն աշխատավորների կարիքների նկատմամբ, երբեմն դրսևորում են ֆորմալիզմ ու քաշքշուկ:

Ղեկավարվելով կուսակցության որոշումներով, հարկավոր է այսուհետև համառորեն ու հետևողականորեն բարելավել սովետական մարմինների, գործադիր ապարատի գործունեությունը, ամեն կերպ բարձրացնել նրանց աշխատանքի որակն ու արդյունավետությունը: Այդ էր սովորեցնում մեզ Լենինը, որն ընդգծում էր, որ «սովետների և սովետական իշխանության կազմակերպման զարգացման վրա պետք է անխոնջ աշխատել» (Երկեր, հ. 27, էջ 328): Կատարելով լենինյան պատվիրանը, հարկավոր է անել անհրաժեշտ ամեն ինչ, որպեսզի պետական մարմինների գործունեության մակարդակը համապատասխանի համագումարի առաջադրած նոր խնդիրներին, որպեսզի դրանք կողմնորոշվեն կոմունիստական շինարարության ոչ միայն այսօրվա, այլև վաղվա օրվա համար:

Այժմ, երբ արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով կատարվող աշխատանքը կապված է խոշոր արտադրամիավորումների ստեղծման հետ, որոշակի տերիտորիայում տնտեսության կոմպլեքսային զարգացումն ապահովելու, այստեղ մինիստրությունների ու գերատեսչությունների, նրանց ձեռնարկությունների շահերը կապակցելու մեծ պարտականությունն ընկնում է իշխանության մարզային ու երկրամասային մարմինների վրա: Ուստի միանգամայն ժամանակին է համագումարի առաջարկությունն այն մասին, որ անհրաժեշտ է ընդունել նոր օրենքներ, որոնք որոշեն երկրամասային, մարզային և օկրուգային սովետների իրավասությունը՝ նոր պայմաններին համապատասխան:

Ելնելով ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած կոմունիստական շինարարության խնդիրներից և հաշվի առնելով սովետական մարմինների կուտակած փորձը, ենթադրվում է օրենսդրական ակտերում ավելի հստակորեն կարգավորել սովետների այդ օղակների լիազորությունները: Առանձնահատուկ ուշադրություն պետք է նվիրվի տեղերում կուսակցության և պետության քաղաքականությունը կիրառելու, երկրամասերի, մարզերի և ազգային օկրուգների տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացման համար երկրամասային, մարզային և օկրուգային սովետների դերն ու պատասխանատվությունը ուժեղացնելու վրա, ինչպես նաև արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության աճը բնակչության բարեկեցության բարձրացման և սպասարկման բարելավման հետ ավելի սերտորեն կապակցելու վրա:

Երկրի առանձին շրջանների դեմքն այժմ ավելի ու ավելի մեծ չափով է որոշվում խոշոր ժողովրդատնտեսական ծրագրերի իրականացմամբ, տերիտորիալ-արտադրական կոմպլեքսների ստեղծմամբ, որը պահանջում է հստակորեն կոորդինացնել մինիստրությունների, մատակարարող մարմինների, նախագծային ու շինարարական կազմակերպությունների, առաքող գործարանների աշխատանքը: Շատ կարևոր է, որ այդ գործում ստեղծագործական ակտիվ դեր կատարեն տեղական սովետական մարմինները: Ներգործուն վերահսկողություն արտադրական ձեռնարկությունների, ինչպես նաև բնակարանների, կոմունալ և կուլտուր-կենցաղային օբյեկտների, դպրոցների ու հիվանդանոցների շինարարության, դրանք ժամանակին ու համաժամանակյա շահագործ-

ման հանձնելու նկատմամբ, մասսայական պրոֆեսիաների որակյալ կադրերի պատրաստումը՝ այս ամենը պետք է գտնվի սովետների տեսադաշտում։

Տնտեսական խոշոր ծրագրերի իրականացումը, արտադրության հետագա համակենտրոնացումն ու մասնագիտացումն զգալիորեն բարձրացնում են կառավարման ճյուղային և տերիտորիալ մարմինների պատասխանատվությունը։ Իսկ դա, իր հերթին, ենթադրում է կառավարման մարմինների աշխատանքի նկատմամբ վերահսկողության հետագա ուժեղացում՝ միութենական և ինքնավար հանրապետությունների Գերագույն սովետների գծով։ Ներկայումս սեսիաներում սկսել են ավելի շատ քննության առնել արդյունաբերության, գյուղատնտեսության, առողջապահության և կուլտուրայի զարգացման, բնական միջավայրի պաշտպանության արմատական հարցերը։ Ակտիվորեն են աշխատում մշտական հանձնաժողովները։ Հետևողականորեն ու նպատակասլացորեն է զարգանում հանրապետական օրենսդրությունը։

Անցած տարիները ցույց տվեցին երկրի պետական իշխանության գերագույն օրգանի՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի գործունեությունն ուժեղացնելու նպատակով կուսակցության մշակած միջոցառումների հիմնավորվածությունը։ Պալատների մշտական հանձնաժողովների սիստեմի կատարելագործման, ճյուղային հանձնաժողովների ստեղծման շնորհիվ զգալիորեն աճել է այն դեպուտատների թիվը, ովքեր ակտիվորեն մասնակցում են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության հարցերի, օրինագծերի, ընդունված որոշումների կատարման նկատմամբ վերահսկողությունն իրականացնելու հարցերի վրա կատարվող աշխատանքին։ Հանձնաժողովների կուտակած տասնամյա փորձը թույլ է տալիս վստահորեն ասելու, որ այդ միջոցառումները եղել են ճիշտ, դրանք նպաստում են հարցերի ավելի խոր քննարկմանը երկրի բարձրագույն ներկայացուցչական մարմնում, ՍՍՀՄ Գերագույն սովետի, նրա պալատների ու նախագահության, յուրաքանչյուր դեպուտատի աշխատանքի արդյունավետության բարձրացմանը։ Մշտական հանձնաժողովների գործունեությունը, ինչպես հայտնի է, բարձր գնահատական ստացավ ՍՄԿԿ XXV համագումարում։

Իշխանության գերագույն օրգանի գործունեության աճող ծավալը, նրա քննարկած հարցերի բնույթի բարդացումը պահանջում են ամենաուշադիր մոտեցում ցուցաբերել դեպի բոլոր նյութերը, համակողմանիորեն քննարկել, հանգամանորեն մշակել ընդունվող որոշումները։ Այդ նպատակով, օրինակ, ժողովրդատնտեսական պլանը և բյուջեն քննարկելու ժամանակ մշտական հանձնաժողովներն իրենց աշխատանքն սկսում են Գերագույն սովետի սեսիայի պաշտոնական բացումից դեռ շատ առաջ։ Այդպիսի պրակտիկան արդարացնում է իրեն, քանի որ հնարավորություն է տալիս պլենար նիստերի քննարկմանը ներկայացնել այնպիսի հարցեր, որոնք արդեն լավ ուսումնասիրված են և նախապես ստուգվել են հանձնաժողովներում։ Հավանաբար, կուտակված փորձի տարածումն օրինագծերի, այլ հարցերի հետ կատարվող աշխատանքի վրա հնարավորություն կտար ավելի մեծ չափով ակտիվացնելու դեպուտատների, մշտական հանձնաժողովների գործունեությունը։

Սկզբունքային կարևորություն ունեցող հարցեր քննարկեց իններորդ գումարման ՍՍՀՄ Գերագույն սովետի հինգերորդ սեսիան, որը վերջերս ավարտեց իր աշխատանքը։ Ինչպես հայտնի է, սեսիայի նախօրյակին կայացավ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, որը քննարկեց ու հիմնականում հավանություն տվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների պետական հնգամյա պլանի, 1977 թվականի ժողովրդատնտեսական պլանի ու պետական բյուջեի նախագծերին։ Պլենումում Լ. Ի. Բրեժնևի արտասանած մեծ ճառում խոր ու համակողմանի վերլուծության է ենթարկված գործերի վիճակը էկոնոմիկայում, ուշադրությունը սրված է այն հրատապ պրոբլեմների վրա, որոնք առաջին պլանի վրա են դրվում ժողովրդական տնտեսության զարգացման ամբողջ ընթացքով, հստակորեն նշված են ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառի խնդիրները։

Նոր հնգամյա պլանը, որը մշակվել է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներին համապատասխան, հաշվի է առնում երկրի տնտեսական զարգացման արդի փուլի առանձնահատկություններն ու յուրահատկությունը, շեշտը դնում է աճի որակական գործոնների վրա, նշում է նոր կոնկրետ բնագծեր, որ նվաճելու է մեր ժողովրդական տնտեսությունը։ Սեսիայում քննարկելուց հետո Գերագույն սովետը միահամուռ հավանություն տվեց հնգամյա պլանին և հաստատեց նրա հիմնական ցուցանիշները։ Հաստատվել են նաև 1977 թվականի պլանն ու բյուջեն և հաշվետվությունը 1975 թվականի բյուջեի կատարման մասին։

Գերագույն սովետն ընդունեց օրենք պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման մասին, որը նոր կարևոր քայլ կհանդիսանա մեր հայրենիքի խոշորագույն գանձերը պահպանելու, աշխատավորներին, հատկապես երիտասարդներին, սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային հիանալի ավանդույթների ոգով դաստիարակելու գործում։ Կազմվել են պալատների նոր մշտական հանձնաժողովներ կանանց աշխատանքի ու կենցաղի հարցերի, մայրության ու մանկության պահպանության հարցերի համար։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԻՐԱՎԱԿԱՆ ՀԻՄՔԵՐԸ

Սոցիալիստական, իրոք դեմոկրատականորեն կազմակերպված հասարակարգում աշխատավորների լիիշխանության և լիիրավության համակողմանի ու ռեալ ապահովման, նրանց արմատական շահերի իրականացման ու պաշտպանության կարևորագույն միջոցներից մեկը սովետական սոցիալիստական իրավունքն է։ Ահա թե ինչու դեմոկրատիայի հետագա զարգացումը, պետության կառավարման, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության գործում աշխատավորների ակտիվության բարձրացումն անխզելիորեն կապված են պետական և հասարակական կյանքի իրավական հիմքերի ամրապնդման, օրենսդրության կատարելագործման հետ։

Սովետական օրենքն ստեղծարար, արարչագործ ուժ է, հեղափոխական-վերափոխիչ գործունեության, կոմունիստական հիմունքներով հասարակության վերակառուցման հզոր գործիք։ Կազմակերպող ներգործություն ունենալով հասարակական պրակտիկայի վրա, շատ կողմերով ձևավորելով մարդկանց վարքագիծը, օրենքը սոցիալիստական ապրելակերպի, հասարակական կարգի ամենագլխավոր հիմքն է, ծառայում է որպես իսկական ազատության և սոցիալական արդարության մարմնավորում։

Սովետական օրենքների հստակ, լակոնիկ տողերում առավել լրիվ արտահայտված, ի մի են ձուլված աշխատավորների կամքը և հասարակական զարգացման կենսական պահանջմունքները։ Եվ դրանք բոլորն էլ՝ սկսած լենինյան առաջին դեկրետներից մինչև ՍՍՀՄ Գերագույն սովետի վերջին սեսիայում ընդունված օրենքները, ծառայել ու ծառայում են կուսակցության և ժողովրդի գործին, կոմունիզմի կառուցման շահերին։

Սոցիալիստական հասարակարգի պայմաններում բացառիկ նպաստավոր հնարավորություններ են ստեղծվում ընդունվող օրենսդրական որոշումների արդյունավետությունն ու կենսունակությունը բարձրացնելու համար։ Դրա հետ մեկտեղ օրենսդրական գործունեությունը բարդ ու բազմակողմանի պրոցես է, որը պահանջում է խորը վերլուծել ու համակողմանիորեն իմաստավորել իրականությունը, պարզորոշ տեսնել զարգացման հեռանկարները։ Այսպես էր այն հասկանում Կ. Մարքսը, օրենսդիրին համեմատելով այն բնախույզի հետ, որն օրենքներ չի ստեղծում, դրանք չի հնարում, այլ միայն ձևակերպում է։

Սովետական օրենսդրական պրոցեսը հնարավորություն է տալիս առավել լրիվ չափով ու ճշտորեն հաշվի առնել քաղաքացիների, տարբեր գերատեսչությունների, գիտական հիմնարկությունների կարծիքը, օրենքը կապել կյանքի հետ։ Կայուն պրակտիկա է դարձել կարևորագույն օրենքների նախագծերի հրապարակումը մամուլում, որը դրանք մատչելի է դարձնում միլիոնավոր քաղաքացիների համար։ Նախագծերի վերաբերյալ եղած բազմաթիվ առաջար-

կությունները ուշադիր ուսումնասիրվում և ընդհանրացվում են, դրանցից շատերը հաշվի են առնվում օրենքների վերջնական խմբագրման ժամանակ։ Այս ամենը բարձրացնում է սովետական օրենքների ներգործունությունը, իրավական սիստեմը դարձնում է կայուն, ուժեղացնում է ընդունվող որոշումների արդյունավետությունը։

Վերջին տարիներին կուսակցության ղեկավարությամբ նպատակամղված մեծ աշխատանք է կատարվել սովետական օրենսդրությունը կատարելագործելու և այն սոցիալիստական հասարակարգի ձեռք բերած նոր մակարդակին համապատասխանեցնելու նպատակով, մի աշխատանք, որն իր թափով, կյանքի տարբեր կողմերի ընդգրկմամբ, տնտեսական, սոցիալական և հոգևոր պրոցեսների վրա ունեցած ազդեցությամբ կարելի է համեմատել, թերևս, միայն 20-ական թվականների առաջին սովետական կոդիֆիկացման հետ։ Աշխատանք և ժողովրդական կրթություն, բժշկական սպասարկում և բնության պահպանություն, ամուսնություն և ընտանիք՝ այս բոլոր ոլորտներում, որոնք ամենից ավելի նշանակալի են մարդու համար և ամենաանմիջական կերպով վերաբերում են նրան, այժմ գործում են ընդհանուր միութենական և հանրապետական օրենսդրական նոր ակտեր։

Ինչպես արդեն նշվեց, օրենքներ են ընդունվել գյուղական, ավանային, քաղաքային և շրջանային սովետների մասին, դեպուտատների ստատուսի մասին։ Լրացվել է օրենսդրությունն իրավախախտումների դեմ մղվող պայքարի մասին, օրինականության և կարգապահության ամրապնդման մասին։ Մեծ աշխատանք է կատարվել սովետական օրենքների սիստեմավորման բնագավառում։

Կարելի է ուղղակի ասել, որ մեր հասարակության պատմության կարևորագույն փուլը՝ զարգացած սոցիալիզմի փուլն ավելի հստակ իրավական ձևավորում է ստանում։ Այդ պրոցեսի ավարտումը, օրենսդրության զարգացման բնագավառի ողջ աշխատանքի իսկական պսակը կհանդիսանա ՍՍՀՄ նոր սահմանադրության ընդունումը, որը կամրագրի մեր կուսակցության ու ժողովրդի պատմական նվաճումները, հանրագումարի կբերի ու կընդհանրացնի այն ամենը, ինչ կատարված է, կարտացոլի վերջին չորս տասնամյակներում երկրի կյանքում տեղի ունեցած որակական խոր փոփոխությունները, զարգացած սոցիալիստական հասարակարգի, նրա քաղաքական կազմակերպության հիմնական գծերը, մեր համաժողովրդական պետության մարդասիրական բնույթը, որն իր առջև նպատակ է դնում հանուն աշխատավոր մարդու, ամբողջ ժողովրդի շահերի՝ կոմունիզմ կառուցել։ Նոր հիմնական օրենքի գլխավոր առանձնահատկություններից մեկը կլինի սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ամրապնդումն ու զարգացումը։

Կուսակցության, սովետական պետության ինչպես մերձավոր, այնպես և հեռանկարային պլաններում ավելի ծանրակշիռ ու կարևոր դեր է հատկացվում օրենքին։ Եվ իհարկե, ամենից առաջ կոմունիզմի համար մղվող մարտի գլխավոր ասպարեզում՝ մեր էկոնոմիկայի, արտադրության կառավարման ոլորտում։ Այժմ, ժողովրդական տնտեսության առջև ծառացած խնդիրների բարդացման հետ, օրենքի կարգավորող, կազմակերպող հիմունքներն ավելի ու ավելի խորն են թափանցում տնտեսական օրգանիզմի բոլոր օղակները, հանդիսանում նրա ինտենսիվ, ռիթմիկ ու հստակ աշխատանքի կարևորագույն պայմանը։ Ղեկավարման, այսպես կոչված, կամային, իսկ, ըստ էության, հաճախ սուբյեկտիվիստական մեթոդները, որոնք, դժբախտաբար, որոշ տեղերում իրենց զգացնել են տալիս, պետք է ավելի վճռականորեն դուրս մղվեն և տեղը զիջեն տնտեսապես հիմնավորված, իսկ այնտեղ, ուր անհրաժեշտ է, իրավաբանորեն հստակ ձևակերպված որոշումներին՝ կառավարման բոլոր մակարդակներում։

Այսօր բուն կյանքը, պրակտիկան հարուցել են ՍՍՀՄ-ում տնտեսական գործունեության իրավական հիմքերը կատարելագործելու, պլանավորման, հաշվառման ու վիճակագրության, կապիտալ շինարարության, նյութատեխնիկական մատակարարման վերաբերյալ նոր օրինագծեր մշակելու հարցը։



Հարկավոր է նաև շարունակել այն աշխատանքը, որը կապված է աշխատանքային, վարչական իրավունքի և օրենսդրության մի քանի այլ բնագավառների հետագա կատարելագործման, դրանք հասարակության և պետության զարգացման արդի պայմաններին համապատասխանեցնելու հետ։

Նորագույն տեխնիկայի սրընթաց ներխուժումը մեր կյանքի մեջ, ժամանակակից արտադրության թափը չտեսնված կերպով սրում են մարդկության կենսագործունեության հիմքը կազմող, նրա կարևորագույն ունեցվածքը հանդիսացող հողի, նրա ընդերքի, անտառների, օդի, գետերի, ծովերի, համաշխարհային օվկիանոսի պահպանման պրոբլեմը։ Եվ այստեղ, իհարկե, բանն այն չէ, որ գիտատեխնիկական հեղափոխությունը, ինչպես պնդում են արևմտյան որոշ պատգամախոսներ, ինքնին, իբր, բնության ու մարդկության թշնամին է։ Շրջակա միջավայրի, մարդկանց համար լուրջ վտանգ է պարունակում ռեսուրսների գիշատչական շահագործումը, գիտատեխնիկական առաջընթացի անկոնտրոլ, շահախնդիր օգտագործումը կապիտալիստական մոնոպոլիաների կողմից։ Եվ ընդհակառակը, դրա նվաճումների հմուտ կիրառումն իր մեջ հիրավի անսպառ հնարավորություններ է պարունակում բնական հարստությունները պահպանելու և բազմապատկելու համար։ Սոցիալիզմը, որը մեզ շրջապատող միջավայրի պահպանումը բարձրացրել է մինչև առաջնահերթ պետական խնդիրների աստիճանի, ձգտում է, այդ թվում և օրենքի ուժով, գիտության ու տեխնիկայի բուռն առաջընթացը միացնել բնության նկատմամբ խնայողական վերաբերմունքի, նրա խելացի օգտագործման հետ, դրանով իսկ բարձր պատասխանատվություն է ցուցաբերում ներկա և ապագա սերունդների հանդեպ։

Մեր երկրում արդեն գործում են օրենքներ հողի, ջրի, ընդերքի մասին։ Մեծ նշանակություն է ունենալու ներկայումս կատարվող աշխատանքն անտառների օգտագործման մասին օրենսդրությունը նորացնելու, կենդանական աշխարհի պահպանության և մի քանի այլ հարցերի մասին օրինագծեր նախապատրաստելու բնագավառում։ Առաջարկություններ են արվում հեռանկարում ՍՍՀՄ-ում բնության պահպանության մասին միասնական ընդհանուր միութենական օրենք մշակելու վերաբերյալ, որն իր մեջ ներառներ այն ամբողջ արժեքավորը, որ այս բնագավառում կուտակվել է սովետական օրենսդրության, ինչպես նաև միջազգային-իրավական պրակտիկայի կողմից։

XXV համագումարը օրենսդրական գործունեության օրակարգում դրեց մի շատ կարևոր հարց ևս. նախապատրաստել և հրատարակել սովետական պետության օրենքների ժողովածու։ Վերջերս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետն ընդունեցին որոշում, որի մեջ սահմանված են այդ խնդրի լուծման կոնկրետ եղանակները։ Նպատակահարմար է համարվել ժողովածուի մեջ ընդգրկել օրենսդրական ակտերը, կուսակցության Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի կարևորագույն համատեղ որոշումները, ՍՍՀՄ կառավարության ընդհանուր նորմատիվ բնույթի որոշումները, ինչպես նաև նախապատրաստել և հրատարակել յուրաքանչյուր միութենական հանրապետության օրենքների ժողովածու։ Կցանկանայի հատկապես շեշտել, որ խոսքը վերաբերում է ոչ թե ողջ օրենսդրական զանգվածը պարզապես մեխանիկորեն ի մի հավաքելուն, այլ սովետական օրենսդրության զարգացման որակապես նոր փուլին, նրա սիստեմի կատարելագործմանը։ Դա քաղաքական հսկայական նշանակություն ունեցող աշխատանք է։ Դրա արդյունքներն ամենաբարեբար ձևով կանդրադառնան սոցիալիստական օրինականության, հասարակական կարգապահության և իրավակարգի ամրապնդման վրա, նոր քայլ կհանդիսանան սովետական դեմոկրատիզմի զարգացման գործում, մեր օրենքներն ավելի մատչելի կդարձնեն բոլոր քաղաքացիների համար։

Օրենսդրական աշխատանքների տեսական ծրագրում, որ նշել է համագումարը, պարզորոշ նկատվում է ստրատեգիական մոտեցումը մեր հասարակության կյանքի իրավական ոլորտի զարգացման նկատմամբ։ Հաշվի առնելով իրավական լծակների՝ պրակտիկայով ստուգված բարձր արդյունավետությու-

նը, կուսակցությունն այսուհետ ևս չթուլացող ուշադրություն է նվիրելու օրենսդրական գործունեությանը, ձգտելու է ուժեղացնելու պլանային սկզբունքները օրինագծերի նախապատրաստման աշխատանքում, որպեսզի օրենքների բովանդակությունն ավելի լրիվ համապատասխանի երկրի առջև ծառացած խնդիրներին։

Շարունակ հոգ տանելով գործող օրենսդրությունը կատարելագործելու մասին, կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունն առաջնահերթ նշանակություն են տալիս օրենքների պարունակած կարգադրությունների պրակտիկ մարմնավորմանը, կարգապահության ամրապնդմանը, հետևողական պայքար են մղում իրավախախտումների, հանցագործ ոտնձգությունների դեմ, այդ խնդիրների հաջող լուծման մեջ տեսնում երկրում գործերի բարելավման հուսալի միջոցը։ Որքան ավելի բարձր է օրինականության մակարդակը, ավելի կայուն է իրավակարգը, որքան ավելի ամուր է կարգապահությունը, այնքան ավելի արդյունավետ է զարգանում էկոնոմիկան, այնքան ավելի խորն է արմատավորվում սոցիալիստական ապրելակերպը, այնքան ավելի վստահ է իրեն զգում սովետական մարդը, այնքան ավելի անձնվիրաբար է նա աշխատում հանուն կոմունիզմի։

Իրավակարգը և կարգապահությունը իսկական դեմոկրատիայի կարևորագույն, անհրաժեշտ գործոններն են։ Հենց յուրաքանչյուր քաղաքացու պատասխանատու մոտեցումը իր պարտականություններին, ժողովրդի շահերին՝ հուսալի բազա է ստեղծում սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքները, անհատի իսկական ազատությունը պրակտիկայում առավել լրիվ չափով մարմնավորելու համար։ Մեր կյանքը հարուստ է բազմաթիվ օրինակներով, որոնք վկայում են այն մասին, որ աշխատանքային կարգապահության պահպանումը, ծառայողական պարտականությունների ճիշտ կատարումը, իրենց քաղաքացիական պատասխանատվության խոր ըմբռնումը դարձել են միլիոնավոր սովետական մարդկանց համոզմունքը, գիտակցված պարտքը։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում առանձնապես անհանդուրժելի են օրենքների խախտումները։ Եվ ոչ միայն այն պատճառով, որ օրենքից, պետական կարգապահությունից, այս կամ այն կանոնից կատարված յուրաքանչյուր, թեկուզ, աննշան շեղումի համար, ինչպես նաև տնտեսական հաշվարկում, պլանավորման մեջ թույլ տրված սխալի, աշխատողների անփութության և անձեռնհասության համար հարկ է լինում վճարել միլիոնավոր ռուբլիների ժողովրդական միջոցներ, տոննաներով փչացված արտադրանք։ Այսօր օրենքի ամեն մի խախտում իր հետ բերում է հիրավի հսկայական բարոյական ծախքեր, լուրջ կորուստներ նոր մարդու դաստիարակության գործում։

Անհրաժեշտ է հիշել, որ սովետական օրենքը ՍՄԿԿ-ի քաղաքականության խտացված արտահայտությունն է։ Յուրաքանչյուր կոմունիստ օրենքը դիտում է որպես կուսակցական դիրեկտիվի մի յուրատեսակ ձև, իր ուղղակի պարտքն է համարում անշեղորեն կենսագործել այն։ Ամեն մի նահանջ օրենքից, իսկ առավել ևս դրա պահանջների ոտնահարում, անկախ այն բանից, թե ում կողմից են դրանք թույլ տրվել և ինչ պատճառաբանություններով են դրանք քողարկվում, վնաս են հասցնում կուսակցության, կոմունիստական շինարարության գործին, անխուսափելիորեն կապված են հասարակական շահերի խախտման հետ և իրենց էությամբ հակադեմոկրատական են։ Ոչ մի բարի մտադրություն և վկայակոչում, թե, իբր, գործը պահանջում էր տնտեսական, այլ ոչ թե իրավական մոտեցում, որ անհրաժեշտ է եղել ղեկավարվել մարդասիրական կամ բարոյական մղումներով, արտադրական նպատակահարմարությամբ, չպետք է օրենքի հետ հաշվի չնստող անձնավորություններին ազատեն ամենախիստ կուսակցական և պետական պատասխանատվությունից։

Ժողովուրդը օրենքի խախտումների հարազատ քույրն է անվանում բյուրոկրատիզմն ու քաշքշուկը։ Դրանց դեմ ևս անհրաժեշտ է հետևողական պայքար մղել, արմատախիլ անել առանձին ղեկավարների անթույլատրելի անտարբերությունը, ճռոմախոսության փաստերը, երբ աջ ու ձախ տրվում են մեծամեծ խոստումներ, որոնք չեն կենսագործվում։ Այդ կապակցությամբ



կցանկանայի հիշեցնել Լենինի վերաբերմունքը նման երևույթների նկատմամբ. առանձնահատուկ ուշադրություն դարձնելով աշխատանքի արդյունքների, հարցի պրակտիկ կողմի վրա, նա խիստ ծաղրում էր այն մարդկանց, ովքեր թափահարում են հրամաններն ու դիրեկտիվները, այն ժամանակ, երբ գործը տեղից չի շարժվում։

Գնահատել մարդկանց փորձն ու գիտելիքները, պատշաճը հատուցել նրանց, վստահել, բայց դրա հետ մեկտեղ խիստ պահանջել, վերահսկել նրանց աշխատանքը— կուսակցության կադրային քաղաքականության հիմնալի պատվիրաններից մեկն է։ Այն մեծ իրավունքները, որոնցով օժտված են մեր ղեկավար աշխատողները՝ ձեռնարկության դիրեկտորից մինչև մինիստրը, նրանց հանդեպ ցուցաբերվող ժողովրդական բարձր վստահությունը— մեղքերի, վրիպումների ու սխալների թողություն չեն, այլ ավելի շուտ նրանց նկատմամբ բարձր ու մեծ պահանջկոտություն ներկայացնելու պայման։

Գիտական կոմունիզմի հիմնադիրները քանիցս ընդգծել են, որ հասարակության զարգացման մեջ իսկական հաջողությունները հնարավոր են միայն որպես ժողովրդական զանգվածների ազատ ու գիտակցական ստեղծագործության արդյունք։ Սոցիալիզմի դինամիզմը անհրաժեշտորեն ենթադրում է մարդկանց սոցիալ-քաղաքական և աշխատանքային ակտիվության հետևողական աճ, իրենց քաղաքացիական լայն իրավունքների ու ազատությունների ավելի ու ավելի եռանդուն օգտագործում՝ հանուն հասարակության շահերի։ Ահա թե ինչու կոմունիստական շինարարության ուղիով հետագա առաջընթաց շարժումը կա ու կլինի շարժում սոցիալիստական դեմոկրատիայի առավել զարգացման, սովետական պետականության կատարելագործման, նրա իրավական հիմքերի ամրապնդման ուղիով։ Սա է մեր լենինյան կուսակցության սկզբունքային գիծը, որ նա անշեղորեն կենսագործել է ու կենսագործելու է։

«Коммунист» № 17, 1976.

# ԳԻՏԱԿԱՆ ԻՆՖՈՐՄԱՑԻԱՆ ԾԱՌԱՅՈՒՄ Է ԳԻՏՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆԸ

**Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների գիտական ինֆորմացիայի սեկտորի վարիչ

*ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ բնորոշ գծերից մեկը գիտության հարաճուն վերելքն է, գիտա-տեխնիկական առաջընթացը։ ՍՄԿԿ XXV համագումարը կարևոր նշանակություն տվեց սովետական գիտության զարգացմանը։ Իսկ այն իրականացնելու գործում մեծ է գիտական ինֆորմացիայի դերը։*

*Սովետական Միությունը գիտության երկիր է, ուր տարեցտարի աճում է գիտական աշխատողների թիվը, ավելանում են գիտա-հետազոտական հաստատությունները։ Այսպես, օրինակ, 1976 թ. վերջերին ՍՍՀՄ-ում կար մեկ միլիոն 300 հազար գիտական աշխատող՝ 1913 թ. 11.600-ի դիմաց։ Գիտահետազոտական աշխատանքներին ազգային եկամտից հատկացվող տարեկան ծախսերը 1940 թ. 0,8 տոկոսի փոխարեն 1975 թ. հասել է ավելի քան 4 տոկոսի, այլ խոսքով 300 մլն-ից այն հասել է 17,5 մլրդ ռուբլու։*

*Սովետական մեծ, առաջավոր գիտության զարգացման շահերը պահանջում են բարձրացնել գիտական ինֆորմացիայի դերը, բարելավել ինֆորմացիոն ծառայությունների գործունեությունը։ Հարկ է նկատել, որ մարդկության գիտա-տեխնիկական նվաճումների երկու երրորդը և մշակված գիտական ինֆորմացիայի 90 տոկոսը ձեռք են բերվել միայն վերջին 70 տարում։*

*Գիտա-տեխնիկական հեղափոխության արդի փուլում ինֆորմացիան և դրա հետ կապված հետազոտական մեթոդները կիրառվում են գիտության բազմազան ճյուղերի՝ քիմիայի, մաթեմատիկայի, ֆիզիկայի, կենսաբանության, հոգեբանության, տնտեսագիտության, պատմության, բանասիրության, փիլիսոփայության, իրավագիտության և այլ ասպարեզներում։ Ձևավորվել է, հետազոտական նոր՝ ինֆորմացիոն գիտական մեթոդը, որը հավասարապես կիրառելի է բոլոր գիտությունների համար։*

*Ինֆորմացիա հասկացությունն ունի ընդհանուր գիտական ասպեկտ։ Ցանկացած գիտությունից ստացած գիտելիքները պրակտիկայում կիրառելը, կամ գիտական հետագա որոնումների ընթացքում ներդնելը միաժամանակ հանդիսանում են ինֆորմացիայի հատուկ տեսակ, որը և կոչվում է գիտական ինֆորմացիա։ Այն նոր ուղղություն է։ Մենք ականատես ենք, թե ինֆորմացիան ինչպես է դառնում գիտության առանձին բնագավառ, գիտական որոնումների և գիտա-տեխնիկական առաջընթացի նպաստավոր գործոն։*

*Գիտական ինֆորմացիան արտահայտված է գրքերում, հոդվածներում, հաշվետվություններում, արտոնագրերում և նմանօրինակ փաստաթղթերում, որոնց թիվը տարեցտարի աննախընթաց աճում է։ Միայն սովետական իշխանության տարիներին ՍՍՀՄ-ում հրատարակվել է 2 և կես միլիոն անուն գիրք և բրոշյուր՝ 39 և կես միլիարդ օրինակ տպաքանակով։ Հրատարակվում է ՍՍՀՄ ժողովուրդների 89 լեզվով գրականություն։*

*Մեծ ծավալ են ստացել գիտական հրատարակությունները։ Աշխարհում*



*ամեն տարի 65 լեզվով հրատարակվում է գիտատեխնիկական 100 հազար ամսագիր, գրանցվում է ավելի քան 400 հազար արտոնագիր, գրվում է 250 հազար գիտական հաշվետվություն, դիսերտացիա։ Ավելին, տարեկան լույս է տեսնում 60 հազար անուն գիտական գիրք, 9 միլիոն գիտական հոդված, որոնք կազմում են տասնյակ միլիարդավոր էջ նյութեր։ Գիտության ցանկացած մասնագիտության վերաբերյալ ամեն օր աշխարհում հրատարակվում է ավելի քան 100 տպագրական մամուլ գիրք։ Յուրաքանչյուր 10—15 տարին մեկ կրկնապատկվում է հրատարակվող գրականության քանակը։ Եվ ահա այդ ամենի հետևանքով հրատապ է դառնում գիտկան ինֆորմացիայի կուտակման և օգտագործման, գիտահետազոտական աշխատանքների ղեկավարման շահերին այն լիովին ի սպաս դնելու բացառիկ կարևոր պահանջը։*

*Խնայել ժամանակը, բարձրացնել գիտության արդյունավետությունը— ահա գիտական ինֆորմացիայի առաջնահերթ խնդիրը։ Գիտական ինֆորմացիան տեխնիկական առաջընթացի շարժիչ ուժ է, գիտատեխնիկական հեղափոխության հզոր գործոն։ Այժմ անհրաժեշտ է գիտական ինֆորմացիայի կոորդինացիան ինչպես գիտության առանձին ճյուղերում, այնպես էլ համազգային մասշտաբով։ Միայն գիտական ինֆորմացիան բարձր հիմքերի վրա դնելու շնորհիվ Սովետական Միությունում գիտական աշխատանքի արտադրողականությունը կարելի է բարձրացնել մեկ երրորդով, որը հավասար է շուրջ 125 հազար գիտական աշխատողի արտադրողականության։*

*Գիտական ինֆորմացիայի բացակայության պայմաններում ո՛չ միայն ցլատվում են ուժերը, այլև հաճախ «մշակվում են» այնպիսի թեմաներ, որոնք շատ վաղուց լուծում են ստացել։*

*Գիտական ինֆորմացիայի արդի պայմաններում անգամ գիտական աշխատողներն իրենց ժամանակի կեսից ավելին հատկացնում են նյութերի որոնմանը։ Հայտնի է, որ մարդու կյանքի տևողությունը շատ քիչ է իրեն զբաղեցնող անհրաժեշտ նյութերը հայտնաբերելու և մշակելու համար։ Բնորոշ է հետևյալ փաստը։ Ակադեմիկոս Օ. Յու. Շմիդտը պատանեկան տարիներին կազմել է այն գրքերի մատենագիտական ցանկը, որոնց ընթերցումը պետք է ճանապարհ բացեր նրա երազանքների իրականացման՝ գիտության ասպարեզ մտնելու համար։ Բայց պարզվել է, որ դրանց սոսկ ընթերցումը պահանջում է առնվազն 1.000 տարի... Ստիպված նա սկսել է կրճատել այն գրքերի անունները, որոնք թեև անհրաժեշտ են, բայց կարելի է շրջանցել, առանց դրանց մի կերպ յոլա գնալ։ Այս անգամ պարզվել է, որ պետք է 250 տարի... Սա դեռ այն ժամանակ... Իսկ այժմ, ինչ խոսք, որ ավելի է դժվարացել։ Այստեղից էլ պարզ է դառնում ինֆորմացիայի դերի բարձրացումը։*

*Գիտական ինֆորմացիան սոսկ փաստերի հաղորդում չէ և ոչ էլ կոչված է «տրանսֆորմատորի» դեր խաղալու։ Ինֆորմացիան գիտություն է, հայտնագործությունների բանալի, գիտնականների կողմնացույց և խորհրդատու։ Դրա խնդիրն է՝ կատարելագործել գիտական աշխատանքի մեթոդները, օգնություն հասնել բոլոր նրանց, ովքեր դրա կարիքն զգում են։*

*Գիտնականի ինֆորմացիոն սպասարկումն ամենից առաջ, գիտական պրոբլեմի կամ նրա առանձին հատվածների լուծման շահերից բխող օգտակար ինֆորմացիայի օպերատիվ ապահովումն է։ Այստեղ ներառվում են գրադարանային ծառայությունը (ինֆորմացիայի աղբյուրի որոնում, դասակարգում, հաշվառում և մատենագրական մշակում), փաստագրությունը (դասակարգում, ռեֆերացում, համառոտագրում և ինֆորմացիայի մշակման այլ մեթոդներ, որոնք հեշտացնում են դրանց որոնումը), ինֆորմացիոն-տրամաբանական վերլուծությունը (այս կամ այն գիտական տեքստի նկատմամբ որոշակի տեսակետի մշակման նպատակով ստացված ինֆորմացիայի քննադատական գնահատումը), ինֆորմացիոն նյութերի հրապարակումը և նրանց ռեպրոդուկցիան և այլն։*

*Արդի դարաշրջանի 70-ական թվականները ՍՍՀՄ-ում նշանավորվեցին գիտական ինֆորմացիայի բուռն վերելքով։ Ստեղծվել է գիտական ինֆորմացիայի լայն ցանց։ 1952 թ. կազմակերպվել է ՍՍՀՄ ԳԱ գիտական ինֆորմա-*

լիս հանրապետության կուսակցական և սովետական օրգաններին, բարձրագույն ուսումնական հաստատություններին, գիտամանկավարժական աշխատողներին:

Սեկտորը կազմված է գիտական հինգ՝ հասարակագիտական, տնտեսագիտական-փիլիսոփայական, բանասիրական, մատենագիտական հրապարակումների, հասարակագիտական գրականության դեպոնացման (ավանդադրման) խմբերից: Բացի այդ, նրա տնօրինությանն է հանձնվել ԳԱ ֆունդամենտալ գրադարանի մասնաճյուղը՝ հասարակական գիտությունների բաժանմունքի գրադարանը, շուրջ 160 հազար օրինակ գրքաֆոնդով, որը և հանդիսանում է գիտա-ինֆորմացիոն նյութերի կարևոր բազա: Սեկտորը, որ միաժամանակ ստանում է հանրապետությունում հրատարակվող հասարակագիտական գրքերի, ինչպես և թերթերի ու հանդեսների օրինակները, գիտական, գործնական կապեր է հաստատել ՍՍՀՄ ԳԱ հասարակական գիտությունների գիտական ինֆորմացիայի ինստիտուտի և ֆունդամենտալ գրադարանի հետ, նրանց օգնությամբ նյութեր է քաղում արտասահմանյան 46 երկրների 426 կազմակերպություններից ու շուրջ 2.000 անուն պարբերականներից: Պարբերաբար ստացվում է նաև ՍՍՀՄ ԳԱ գիտական ինֆորմացիայի, արևելագիտության, Հեռավոր Արևելքի և այլ ինստիտուտների, Ուկրաինայի, Վրաստանի, Ադրբեջանի, Մոլդավիայի, Ուզբեկստանի և միութենական այլ հանրապետությունների գիտությունների ակադեմիաների հասարակագիտական ինֆորմացիայի նյութերը, Յունեսկոյի բյուլետենները, ՏԱՍՍ-ի ինֆորմացիոն թողարկումները:

Գիտական ինֆորմացիայի ինստիտուտը սեկտորին կանոնավոր կերպով ապահովում է սովետական և արտասահմանյան նոր գրականության վերաբերյալ գիտա-ինֆորմացիոն մատենագիտական բյուլետեններով և տեղեկատու գրականությամբ: Ինստիտուտի թողարկած ռեֆերատիվ ժուռնալներն ու բյուլետենները հարուստ ինֆորմացիա են պարունակում ո՛չ միայն Սովետական Միության, այլև արտասահմանյան (ինչպես սոցիալիստական, այնպես էլ կապիտալիստական) երկրների հասարակական գիտությունների վերաբերյալ:

Իր հերթին, մեր սեկտորը ՍՍՀՄ ԳԱ հասարակական գիտությունների գիտական ինֆորմացիայի ինստիտուտին և ֆունդամենտալ գրադարանին է ուղարկում համապատասխան գիտությունների վերաբերյալ առավել աչքի ընկնող աշխատությունների մասին գիտական ինֆորմացիա՝ ռեֆերատիվ ժուռնալներում օգտագործելու համար, պարբերաբար թողարկում է գիտա-ինֆորմացիոն մատենագիտական չորս մատենաշարով բյուլետեններ, այդ թվում՝ «Սովետական հասարակագիտական հայերեն նոր գրականություն», «Հայագիտությունն արտասահմանում», «Մատենագիտություն» և «Շտապ ինֆորմացիա»:

«Մատենագիտություն» մատենաշարով առանձին պրակներով հայերեն և ռուսերեն լույս են տեսել «Կ. Մարքսի աշխատությունները հայերեն», «Ֆ. Էնգելսի աշխատությունները հայերեն», «Վ. Ի. Լենինի աշխատությունները հայերեն», «Վ. Ի. Լենինը, հեղափոխությունը, անհատը» և այլ բյուլետենները, որոնք ամենից առաջ, կոչված են օգնելու Հայաստանում մարքսիզմի տարածման, մարքսիստական գրականության հայերեն հրատարակությունների պատմության հետազոտողներին, մարքսիզմի կլասիկների գրական մեծ ժառանգության ուսումնասիրողներին: Հրատարակվել են 1970—1975 թվականներին Սովետական Հայաստանում հասարակագիտական գիտությունների վերաբերյալ պաշտպանված դիսերտացիաների մատենագիտությունը:

Սեկտորը, Ադրբեջանի և Վրաստանի համանուն սեկտորների հետ միասին, հրատարակել է «Անդրկովկասի ժողովուրդների բարեկամությունը», «1905—1907 թթ. հեղափոխությունը Անդրկովկասում» մատենագիտական բյուլետենները, որոնք հարուստ ինֆորմացիա ունեն երկրամասում սովետական տարիներին այդ թեմաներով հրատարակված գրականության վերաբերյալ: Ներկայումս տպագրության է պատրաստվում «Մեծ Հոկտեմբերը և սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Անդրկովկասում» մատենագիտական բյուլետենը: Գիտական հասարակայնությունը ջերմորեն է ընդունել «Ազգային հարաբերությունները և ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը», «Հայ-ադրբեջանական գրական կապեր», «Իններորդ հնգամյակը տեսության և պրակտիկայի մեջ», «Գիտատեխնիկական հեղափոխության տնտեսագիտական պրոբլեմները», «ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի հրատարակությունների մատենագիտություն» և այլ թեմատիկ մատենագիտական թողարկումները:

Սեկտորը սիստեմատիկաբար «Հայագիտությունն արտասահմանում» մատենաշարի թողարկումներով ինֆորմացիա է տալիս արտասահմանյան հանրագիտարաններում, թերթերում ու հանդեսներում տպագրված այն նյութերի ու հոդվածների վերաբերյալ, որոնք առնչվում են հայ ժողովրդի պատմությանն ու մշակույթին, Սովետական Հայաստանին: Պարբերաբար լույս տեսնող «Հայ գիտնականների գործերը արտասահմանյան հանդեսների գնահատմամբ» գիտա-ինֆորմացիոն բյուլետեններում տրվում են սովետական գիտնականների աշխատությունների վերաբերյալ արտասահմանյան հանդեսների գրախոսությունների թարգմանությունները:

«Սովետական հասարակագիտական նոր գրականություն» մատենաշարով լույս են տեսել «Բժշկության ինստիտուտի հարցի շուրջը», «Պետության և իրավունքի հարցեր», «Տնտեսագիտության հարցեր», «Փիլիսոփայության պրոբլեմները», «Հայաստանում սովետական իշխանության հաստատման պրոբլեմը սովետահայ պատմագրության մեջ», «Հայ ժողովրդի ծագման և կազմավորման պրոբլեմը հայագիտության մեջ», «Գրականագիտության պրոբլեմներ», «Պատմություն աղվանից աշխարհի» երկը հայ մատենագիտության համակարգի մեջ» և այլն:

Գիտական արժեքավոր ինֆորմացիա է պարունակում «Նոր նյութեր Բաքվի 26 կոմիսարների մասին» թողարկումը: «Մամուլի նորություններ գործակալության» աշխատակից Լեոնիդ Միտրոխինը Դելիի արխիվներում հայտնաբերել է Բաքվի 26 կոմիսարների չարանենգ սպանության քողը բացող նոր նյութեր: Սեկտորը առանձին բյուլետենով անգլերեն, ռուսերեն և հայերեն հրատարակել է այդ նյութերը (մեր խնդրանքով այն մեզ է տրամադրել Լ. Միտրոխինը), որոնք նոր լույս են սփռում Բաքվի բոցաշունչ կոմիսարների՝ Ստ. Շահումյանի, Ա. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Ի. Ֆիոլետովի և մյուսների սպանության հանգամանքների վրա:

Մեր սեկտորի առաջնահերթ խնդիրներից է նաև տնտեսագիտական ինֆորմացիայի կազմակերպումը: Կարևորվում է տնտեսական նոր ռեֆորմի արդյունավետության, գիտատեխնիկական հեղափոխության, սոցիալիզմի քաղաքատնտեսության, Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության տասներորդ հնգամյա պլանի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալիստական մրցության ծավալման, արտասահմանյան երկրների հետ Սովետական Հայաստանի տնտեսական կապերի և այլ պրոբլեմների գիտական ինֆորմացիայի ապահովումը:

Ջերմ ընդունելության են արժանացել «Տնտեսագիտության պրոբլեմներ», «Տնտեսագիտության հարցերը», «Հայ տնտեսագիտական մտքի պատմություն», «Բնության պաշտպանության և օգտագործման սոցիալական պրոբլեմներ» և այլ բյուլետեններ: Ռեֆերացվել են «Սոցիալիստական վերարտադրության լենինյան ուսմունքը» կոլեկտիվ մենագրությունը և տնտեսագիտության տարբեր պրոբլեմներին նվիրված մի շարք արժեքավոր աշխատություններ:

ՀՍՍՀ ԳԱ նախագահությանն առընթեր հասարակական գիտությունների գիտական ինֆորմացիայի սեկտորը գիտական նոր օջախ է հանրապետությունում, որը, առաջնահերթ նշանակություն տալով սոցիալական և քաղաքական ինֆորմացիային, ջանում է ընթանալ կյանքին համընթաց, կատարելագործել ինֆորմացիոն ծառայությունները, իր ուժերը լիովին ի սպաս դնել ՍՄԿԿ XXV համագումարի կողմից հասարակական գիտություններին առաջադրված խնդիրների կենսագործմանը:

# ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՃԻ ԱՌՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ*

Լ. Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ՏԱՐԲԵՐ ԵՐԿՐՆԵՐԻ գիտնականներին ու մասնագետներին խորապես մտահոգում է աշխարհի բնակչության շարունակական աճը, որը մեծ չափերի է հասել հատկապես ներկա հարյուրամյակում։ Եթե XX դարի սկզբին երկրագնդի բնակչությունը 1 մլրդ 617 մլն էր, ապա 1975 թ., պաշտոնական տվյալների համաձայն, այն հասնում էր գրեթե չորս միլիարդի։ Ելնելով վերջին 50—60 տարում բնակչության աճի տեմպերից, դեմոգրաֆները հաշվել են, որ մինչև 2000 թվականը երկրագնդի բնակչությունը կհասնի 6 միլիարդ 280 միլիոնի։ Բնական է, որ այդ կապակցությամբ ծագում են բազմաթիվ պրոբլեմներ, որոնցից կարևոր է նաև դեմոգրաֆիական փոփոխությունների վրա սոցիալ-տնտեսական գործոնների ունեցած ազդեցության հարցը։ Եվ պատահական չէ, որ ազգաբնակչության պրոբլեմների վերաբերյալ Բուխարեստի համաշխարհային կոնֆերանսում (1974 թ.) օրակարգի հիմնական թեմաներից մեկը հենց այդ հարցն էր։

Մարքս-լենինյան տեսության ներկայացուցիչները, բնականաբար, գտնում են, որ դեմոգրաֆիական փոփոխությունների հիմքում ընկած են սոցիալ-տնտեսական գործոնները, որոնք որոշիչ ձևով են ներգործում ազգաբնակչության աճի տենդենցների վրա։ Միանգամայն այլ տեսակետի են կապիտալիստական երկրների որոշ ներկայացուցիչներ՝ դեմոգրաֆիական երևույթները դիտելով զուտ մալթուսական դիրքերից։ Այսպես, նրանց պնդմամբ, բնակչության արագ աճը ստեղծում է կապիտալիստական հասարակարգի սոցիալական այնպիսի արատներ, ինչպես աղքատությունը, սովը, գործազրկությունը և այլն, և որ սոցիալ-տնտեսական այդ սուր պրոբլեմները կարող են դրականապես լուծվել բնակչության աճն արհեստականորեն դանդաղեցնելու միջոցով միայն։ Միանգամայն պարզ է, որ այդ նախադրյալներից արվում են գործնական սխալ հետևություններ։ Մասնավորապես, առաջարկվում է դեմոգրաֆիական մի այնպիսի քաղաքականություն, որը ծառայում է բնակչության աճը սահմանափակելու նպատակին՝ որպես աղքատության, սովի և այլ պրոբլեմների լուծման հիմնական միջոցի, անկախ երկրի սոցիալ-տնտեսական վիճակից ու զարգացման մակարդակից։ Ընդ որում, ինչպես բնակչության վիճակի, այնպես էլ նրա դեմոգրաֆիական վարքագծի վրա սոցիալ-տնտեսական գործոնների ազդեցությանը նրանք կամ պատշաճ ուշադրություն չեն դարձնում, կամ պարզապես անտեսում են։

Մինչդեռ լայնորեն հայտնի է բնակչության վերաբերյալ մարքս-լենինյան այն կարևորագույն դրույթը, որ դեմոգրաֆիական պրոցեսներում կատարվող փոփոխությունների հիմնական պատճառը սոցիալ-տնտեսական զարգացումն է։ Եվ այնպիսի գործոններ, ինչպիսիք են հասարակական կարգը, երկրի տնտեսական զարգացման, բարեկեցության և կուլտուրայի աստիճանը, ուր-

* Տպագրվում է հարցադրման կարգով. Խմբ.։



բանիզացիան և այլն ազդում են բնակչության վերարտադրության օրինաչափությունների վրա։ Այդ կապակցությամբ կարևորվում է հատկապես սոցիալ-տնտեսական այնպիսի գործոնների ազդեցությունը ծնելիության վրա, ինչպիսիք են բարեկեցությունը և կուլտուրան։

Ծննդի ցուցանիշի վրա բարեկեցության մակարդակի ազդեցության հարցի շուրջ հիմնականում կա երկու տեսակետ։ Հետազոտողների մի խումբը գտնում է, որ բարեկեցության և ծնելիության միջև գոյություն ունի ուղղակի կապ. որքան ցածր է բարեկեցությունը, այնքան, համապատասխանաբար, ցածր է նաև ծնելիության մակարդակը, քանի որ ընտանիքի ամեն մի նոր անդամին անհրաժեշտ են լրացուցիչ կենսամիջոցներ։ Եվ, ընդհակառակը, որքան բարձր է բարեկեցությունը, այնքան, հետևաբար, բարձր է նաև ծնելիությունը։

Սովետական հետազոտողներից այդ տեսակետն ամենից ավելի հստակորեն արտահայտել է պրոֆ. Բ. Յա. Սմուլևիչը։ Նա գրում է. «...ինչքան ավելի կայուն է բնակչության տվյալ խմբի (տվյալ դեպքում՝ մտավորականության) դրությունն ու բարձր է նրա բարեկեցությունը, այնքան այնտեղ ավելի քիչ են ամուրիները, այնքան այնտեղ ավելի հազվադեպ է հրաժարումը մայրության և հայրության բերկրանքներից, այնքան համեմատաբար ավելի շատ են երեխաները» (Б. Я. Смулевич. Критика буржуазных теорий и политики народонаселения. М., 1959, стр. 93)։ Այնուհետև նա շարունակում է. «Մտավորականության և ծառայողների շրջանում ցածր ծնելիությունն ամենից առաջ հետևանք է այն բանի, որ միջոցների պակասի պատճառով նրանց մեծ մասը հնարավորություն չունի ժամանակին ամուսնական կապ հաստատել և ընտանիք հիմնել» (Նույն տեղը)։

Նման մտքեր կան նաև պրոֆ. Ա. Յա. Բոյարսկու, Ս. Մ. Սլեսարյովի և այլոց աշխատություններում։ Այդ դրույթը հիմնավորելու համար նրանք, մասնավորապես, վկայակոչում են այն փաստը, որ կապիտալիստական երկրներում ծնելիությունն անկում է ապրում տնտեսական ճգնաժամերի ժամանակաշրջանում, երբ խիստ մեծանում է գործազուրկների բանակը, վատթարանում աշխատավորների դրությունը և այլն։ Իսկ տնտեսական վերելքի ժամանակաշրջանում, գործազրկության կրճատման պայմաններում ծնելիության մակարդակը նկատելիորեն բարձրանում է։ Այդպիսի փաստեր բերում են Վ. Ս. Կոզլովը (տե՛ս В. С. Козлов. Естественное движение населения в капиталистических странах Европы. М., 1959) և ուրիշ հեղինակներ։

Գիտնականների մյուս խումբը, հենվելով վիճակագրական տվյալների վրա, գտնում է, որ ինչպես կապիտալիստական, այնպես էլ սոցիալիստական երկրներում, բարեկեցության և ծնելիության միջև գոյություն ունի հակադարձ կապ։ Այս դրույթը հաստատվում է մի շարք երկրների բնակչության սոցիալական կազմի վերլուծման հիման վրա. պարզվում է, որ առավել ապահովված ընտանիքներում ծնելիության ցուցանիշն ավելի ցածր է, քան սակավ ապահովվածներում։ Նույնն է նաև տնտեսապես բարձր զարգացած երկրների բնակչության ծնելիության դինամիկան՝ թույլ զարգացած երկրների հետ համադրելիս։ Որպես կանոն, բնակչության մեկ շնչի հաշվով ազգային եկամտի բարձր մակարդակ, հետևաբար և առավել բարեկեցություն ունեցող տնտեսապես զարգացած երկրներում ծնելիության ցուցանիշն անհամեմատ ավելի ցածր է, քան թույլ զարգացած երկրներում։

Թեև այս տեսակետը դեռևս բավականաչափ հիմնավորված չէ, բայց արդեն շատ կողմնակիցներ ունի ինչպես արտասահմանում, այնպես էլ մեզ մոտ։ Սովետական Միությունում նման հայացքներ պաշտպանում են ակադեմիկոս Ս. Գ. Ստրումիլինը, Ա. Դ. Կուզնեցովը, Գ. Մ. Կորոստելևը, Լ. Մ. Դավթյանը, Ն. Ա. Տաուբերը և ուրիշներ։

Այսպիսով, բարեկեցության և ծնելիության հարաբերակցության հարցում կան երկու հակադիր տեսակետներ։ Հարց է ծագում. դրանցից ո՞րն է ճիշտ արտացոլում ազգաբնակչության մեջ տեղի ունեցող դեմոգրաֆիական պրոցեսները։

Իրոք, եթե ճիշտ է այն դրույթը, թե տնտեսական անկման, ճգնաժամերի

տատերի ու պապերի), երբ երիտասարդ ամուսնական զույգերը, ստանալով մեկուսացված բնակարան, աշխատում են որքան կարելի է շուտ բաժանվել «ծերերից» ու ձեռք բերել ինքնուրույնություն։ Իրենց հերթին «ծերերն» էլ «տարեց հասակում» սիրով առանձնանում են իրենց բնակարանում և վարում ավելի հանգիստ ու խաղաղ կյանք։ Բայց այս ամենը հանգեցնում է ավանդական «բարդ» ընտանիքի աստիճանական քայքայման։ Հետզհետե ավելի շատ են հանդիպում ընտանիքներ առանց պապիկների ու տատիկների, այն դեպքում, երբ հենց նրանք են (առանձնապես տատիկները), պրոֆ. Բ. Ց. Ուրլանիսի արտահայտությամբ, «երիտասարդ ընտանիքի էական նեցուկը», և այդ հանգամանքը «ծնելիության ամենևին էլ պակաս կարևոր գործոն չէ»։

Եվ իրոք, երբ ընտանիքում կան ավագ սերնդի մարդիկ, թեկուզ կենսաթոշակային տարիքի, երեխաների ծնունդը չի սահմանափակվում մեկով։

Մենք, իհարկե, հեռու ենք այն մտքից, թե տատիկը գրեթե դառնում է դեմոգրաֆիական կացության փոփոխման գլխավոր հույսը, բայց որ նա ընտանիքում նպաստում է ծնելիության աճին, դա անվիճելի է։

Վերը շարադրվածից կարելի է հետևցնել, որ ծնելիության նվազումը, ինչպես մի շարք սոցիալիստական, այնպես էլ տնտեսապես զարգացած մի քանի կապիտալիստական երկրներում, պայմանավորված է ոչ թե պարզապես նյութական կարողության մեծացմամբ, որը հաճախ հրամցնում են որպես բարեկեցություն, այլ կուլտուրայի ձեռք բերված մակարդակի և դրա հետ կապված բնակչության պահանջմունքների աճով։

Ծնելիության հակադարձ կախումը կուլտուրայի արդի պայմաններում ձեռք բերված մակարդակից ո՛չ միայն չի հերքում, այլև, ընդհակառակը, հաստատում է մարքսիստական այն հետևության ճշտությունը, որ բնակչության աճի տեմպերը, վերջին հաշվով, որոշվում են մարդկանց տվյալ տնտեսական պայմաններով։

Սակայն տնտեսական գործոնի ազդեցությունը հասարակական կյանքի այդ կողմի վրա միշտ չէ, որ իրականացվում է ուղղակի և անմիջականորեն. ավելի հաճախ այն իրականացվում է անուղղակիորեն, դրանից ածանցված ուրիշ լծակների ու գործոնների միջոցով, որոնց թվում կուլտուրան խաղում է առավել կարևոր դեր։ Բայց կուլտուրան ևս այլ բան չէ, քան նյութական կյանքի հոգևոր դրսևորումը, որն ամբողջապես պայմանավորված է նրանով։ Այլ կերպ ասած, ամեն մի հոգևոր կուլտուրա հիմնվում է միանգամայն որոշ տնտեսական պայմանների վրա, որոնց մեջ վճռականն ու որոշիչը եղել ու մնում է նյութական արտադրության եղանակը։ Բայց, լինելով այս կամ այն տնտեսական հարաբերության արդյունք, կուլտուրան ձեռք է բերում որոշ հարաբերական ինքնուրույնություն, դրական կամ բացասական ազդեցություն ունենալով ծնելիության դինամիկայի վրա՝ նայած սահմանված կոնկրետ պայմաններին։

Ուստի, իրավացի չեն բուրժուական շատ գիտնականներ, այսպես կոչված, «կուլտուրայի տեսության» կողմնակիցները (ամերիկացի դեմոգրաֆ Պ. Լենդիս և ուրիշներ), որոնք հակված են բացարձակացնելու կուլտուրայի դերը բնակչության աճի դինամիկայում։

Ամփոփելով ասվածը, կարելի է շեշտել, որ բարեկեցության հասկացությունն անհրաժեշտ է դիտել բառի ոչ թե միանշանակ ու նեղ իմաստով և հանգեցնել լոկ նյութական ունևորության, այլ լայն ու բարդ իմաստով, որտեղ նյութական գործոնը կարող է ներգործել ծնելիությունը բարձրացնելու, իսկ կուլտուրայի աճը, ընդհակառակը, նվազեցնելու ուղղությամբ։

Որոշակի պայմաններում ծնելիությունը նվազեցնող գործոնների (կուլտուրայի աճը) ազդեցությունն ավելի ուժեղ է լինում, քան ծնելիության խթանողներինը (նյութական ունևորությունը), որով և, վերջին հաշվով, որոշվում է ծնելիության դինամիկան։

Հետևաբար, ընդհանրապես բնակչության վերարտադրության և, մասնավորապես, ծնելիության դինամիկայի վրա, որոշիչ ազդեցություն են ունենում սոցիալ-տնտեսական գործոնները։ Միանգամայն բնական է, որ հենց այդ տեսակետին է այժմ հանգում աշխարհի դեմոգրաֆների ճնշող մեծամասնությունը։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

**Մ. Բ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական
աշխատանքի բաժնի վարիչ

## ՄԱՐՏՈՒՆԱԿՈՒԹՅԱՆ ՍՏՈՒԳԱՏԵՍ

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՆԱԿԱՆ կուսակցական կազմակերպություններում (բացառությամբ կուսկոմիտեներ ունեցող կազմակերպությունների) ավարտվեցին հաշվետու-ընտրական ժողովները՝ կուսակցական կազմակերպությունների մարտունակության և կազմակերպվածության ստուգատեսը։

Կուսխմբերի ղեկավարների, արտադրամասային և սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների քարտուղարների հաշվետվություններն ու ընտրությունները առհասարակ կարևոր քաղաքական իրադարձություն են մեր կուսակցության կյանքում։ Իսկ կուսկազմակերպությունների՝ վերջերս ավարտված հաշվետու-ընտրական կամպանիայի առանձնահատկությունը պայմանավորված էր նրանով, որ այն տեղի ունեցավ ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարներից հետո առաջին անգամ և ընթացավ դրանց գաղափարների ու որոշումների անմիջական ներգործության ներքո։

Ինչպես ցույց են տալիս հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները, հաշվետու ժամանակաշրջանում նկատելիորեն բարձրացել է կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը, զարգացել նախաձեռնությունը, ամրապնդվել նրանց շարքերը, հարստացել են աշխատանքի ձևերն ու մեթոդները, անցկացվող միջոցառումները դարձել առավել արդյունավետ։

Ավարտված հաշվետու-ընտրական ժողովներին բնորոշ էին՝ կոմունիստների ակտիվության աճը, սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության լայն ծավալումը, թերությունների հանդեպ անհաշտ վերաբերմունքը, իրենց ու ընկերների, ղեկավար կադրերի նկատմամբ խստապահանջությունը, սոցիալիստական օրինականության ամրապնդման նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումի որոշումները մինչև վերջ կենսագործելու Կենտկոմի մշակած պրակտիկ միջոցառումները իրականացնելու պատրաստակամությունը, աշխատավորական լայն զանգվածների ջերմ աջակցությունը, պետական պլանների ու սոցպարտավորությունների կատարման գործում նրանց հաստատակամությունը։

Կոմունիստների հարաճուն ակտիվության վկայություն է նրանց գործաբար մասնակցությունը կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական կամպանիային։ Բավական է ասել, որ կուսակցության անդամների և թեկնածուների ավելի քան 96 տոկոսը ներկա է եղել ժողովներին, հաշվետու զեկուցումների շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցել է յուրաքանչյուր երրորդ կոմունիստը։ Ելույթ ունեցողների մեկ երրորդը եղել է շար-

քային բանվոր կամ կոլտնտեսական։ Հատկանշական է, որ նրանք, տիրոջ իրավունքով, բոլշևիկյան սկզբունքայնությամբ վերլուծելով կատարված աշխատանքը, միաժամանակ արել են բազմաթիվ արժեքավոր առաջարկություններ ու դիտողություններ՝ գործերի վիճակի հետագա բարելավման նպատակով։

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովների համար բնորոշը նաև այն է, որ դրանք անցան աշխատավորական զանգվածների քաղաքական ու աշխատանքային վերելքի պայմաններում։ Հանրապետության ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների հարյուր-հազարավոր աշխատավորներ մեծ ոգևորությամբ ձեռնամուխ եղան տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական խնդիրները պատվով լուծելու, այն բարձր արդյունավետության ու որակի հնգամյակ դարձնելու գործին։

Աննախադեպ հաջողության հասավ հանրապետության արդյունաբերությունը։ Էկոնոմիկայի այս ճյուղի աշխատողները եռանդուն ջանքերով ոչ միայն ապահովեցին հնգամյակի առաջին տարվա առաջադրանքների կատարումը, այլև զգալիորեն գերազանցեցին սահմանված բնագծերը։ Արդյունաբերական արտադրանքի իրացման 1976 թ. պետական պլանը կատարվեց 102,9, համախառն արտադրանքինը՝ 102,4 տոկոսով։ Արտապլանային կարգով իրացվել է տասնյակ միլիոնավոր ռուբլիների արդյունաբերական արտադրանք։ 1975 թ. համեմատությամբ, տասներորդ հնգամյակի առաջին տարում արտադրանքի իրացման աճը կազմել է 8,3, իսկ համախառն արտադրանքինը՝ 8,5 տոկոս, որն ամենաբարձր ցուցանիշներից է Միությունում։ Զգալի աշխատանք է կատարվել արտադրանքի որակի բարելավման համար։ Այսօր հանրապետությունում թողարկվող ավելի քան 720 արտադրատեսակ կամ արդյունաբերական արտադրանքի ողջ ծավալի 7,5 տոկոսը տրվում է որակի պետական նշանով։

Գոհացուցիչ են նաև գյուղի աշխատավորության հաջողությունները։ Կոլտնտեսությունները ու սովխոզները, ամբողջությամբ վերցրած, կատարել ու գերակատարել են գյուղատնտեսական գրեթե բոլոր մթերքների արտադրության և պետական մթերումների պլանային առաջադրանքները։

Հանրապետության ժողովրդական տնտեսության ձեռք բերած նվաճումները, արտադրության աճի բարձր տեմպերը, լավագույն նախադրյալներ են ստեղծում ոչ միայն 1977 թվականը, այլև ողջ հնգամյակը հաջողությամբ եզրափակելու համար։

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ժողովները համոզիչ կերպով ցուցադրեցին հանրապետության կոմունիստների միասնությունը, գաղափարական ու կազմակերպական համախմբվածությունը։ Ժողովների մասնակիցներն արտահայտեցին իրենց վճռականությունը՝ պաշտպանելու կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության կուրսը, հետևողականորեն կենսագործելու ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները։ Նրանք ջերմ հավանություն տվեցին երկրի առջև ծառացած սոցիալ-տնտեսական և քաղաքական խնդիրների լուծման համար ՍՄԿԿ Կենտկոմի, նրա Քաղբյուրոյի և անձամբ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ծավալած արգասավոր գործունեությանը։ Տասներորդ հնգամյակի առաջին տարվա խնդիրների հաջող լուծման համար ծավալված համաժողովրդական պայքարի եզրափակիչ փուլում անցկացված կուսակցական հաշվետու-ընտրական ժողովները ոչ միայն ամփոփեցին այդ ասպարեզում կատարված աշխատանքի արդյունքները և մշակեցին կուսակցական կազմակերպությունների առջևկա կոնկրետ անելիքները, այլև արտահայտվեցին կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրականացման, ձեռք բերված հաջողությունների ամրապնդման համար հանրապետության ողջ աշխատավորների, կոմունիստների անսասան վճռականությունն ու պատրաստակամությունը։

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովների մասնակիցների ուշադրության կենտրոնում են գտնվել տնտեսական շինարարության կառավարման, կուսակցական ղեկավարման հետագա կատարելագործման, հասարակա-



կան արտադրության արդյունավետության բարձրացման, պետական պլանների ու առաջադրանքների կատարման գործում կադրերի պատասխանատվության բարձրացման, ներքին ռեզերվների օգտագործման հարցերը։ Հաշվետու զեկուցումներում, ելույթներում զգացվում էր այդ կարևորագույն հարցերի լուծման գործում կոմունիստների սրտացավ վերաբերմունքը, առաջադրված խնդիրների մասշտաբայնության ու կարևորության գիտակցումը։

Կիրովականի մանվածքային ֆաբրիկայի կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում արտադրության արդյունավետության բարձրացման հարցը շատ հետաքրքրական ձևով արտահայտեց արտադրության վետերան Տ. Ուլիխանյանը. «Այժմ արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրը կարող է հաջողությամբ իրականացվել միմիայն բարձր որակավորում ունեցող, քաղաքականապես հասուն, կուսակցության տնտեսական ստրատեգիան ճիշտ ընկալող մարդկանց միջոցով, որոնք ունակ լինեն պայքարելու ամեն մի առաջավորի, նորի ներդրման համար։ Ուստի, եկեք ձգտենք այդպիսի գաղափարական-քաղաքական և մասնագիտական բարձր մակարդակի ձեռք բերմանը։ Իսկ դա մեզանից յուրաքանչյուրիս սրբազան պարտքն է, այդ է այսօր պահանջում մեզանից կուսակցությունը»։

Որպես ժողովրդա-տնտեսական կարևորագույն պրոբլեմ՝ ժողովներում սրությամբ արծարծվեցին նաև արտադրանքի որակի բարելավման հարցերը։ Այս կապակցությամբ կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպությունների հասցեին արվեցին բազմաթիվ դիտողություններ և գործերի վիճակի բարելավմանն ուղղված արժեքավոր առաջարկություններ։ Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ղափանի, Հրազդանի արդյունաբերական առանձին ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում մասնավորապես նշվեց, որ արտադրանքի որակի բարելավման նպատակով կուսակցական կազմակերպությունների ու դիրեկցիաների մշակած միջոցառումներից շատերը առայժմ բավարար արդյունք չեն տալիս, որ շատ հաճախ ցածրորակ արտադրանքի համար ոչ ոք պատասխանատվություն չի կրում։

Արդյունաբերական, տրանսպորտային շատ ձեռնարկությունների կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում լուրջ խոսակցություն է եղել այն մասին, որ դեռևս վատ են օգտագործվում արտադրական հզորությունները, մեծ են մեքենասարքավորումների պարապուրդները, բանվորական աշխատաժամանակի կորուստները։

Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվել պլանային կարգապահության ամրապնդման, այդ գործում համապատասխան մինիստրությունների, գերատեսչությունների, առանձին կադրերի պատասխանատվության բարձրացման հարցերին։ Այսպես, Արտաշատի պարկետի ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում քննադատական խիստ խոսք է ասվել Հայկական ՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության, նրա արդյունաբերական և շինարարական նյութերի և իրերի արտադրամիավորման հասցեին, որոնց մեղքով միայն 1976 թվականին չորս անգամ փոխվել են ձեռնարկության պլան-առաջադրանքները, իսկ այդ ամենը բացասական ազդեցություն է ունեցել ֆաբրիկայի տնտեսական գործունեության վրա։

Շինարարական ու նախագծային կազմակերպությունների կոմունիստներն իրենց հաշվետու-ընտրական ժողովներում ՀԿԿ Կենտկոմի մայիսյան (1976 թ.) պլենումի որոշումների առնչությամբ հանգամանալից կերպով վերլուծեցին շինարարական աշխատանքների վիճակը, վեր հանեցին այդ գործում եղած թերությունների պատճառները։ Հաշվետու զեկուցումներում և ելույթներում գլխավոր ուշադրությունը սևեռվեց կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման, շինմոնտաժային աշխատանքների պլանների կատարման, նախագծերի ու շինարարական աշխատանքների որակի բարելավման անհրաժեշտությանը։ Լուրջ հանդիմանություն է եղել այն մասին, որ դեռևս չի ապահովված շինարարական կոնվեյերի բոլոր օղակների միջև անխափան, համաձայնեցված աշխատանքը, նրանց փոխգործողությունը։ Այսպես, օրինակ,

տու զեկուցումներում, ելույթներում նշվեցին հանրապետության ողջ աշխատավորության գաղափարական դաստիարակության, տնտեսական-քաղաքական խնդիրների լուծման գործում ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի լայն մասսայականացման, կուսակցական, կոմերիտական ուսուցման սիստեմում դրանց խոր ուսումնասիրության խոշորագույն նշանակությունը։ Ամենուրեք շեշտվեց այն միտքը, որ կուսակցական կազմակերպությունների գլխավոր խնդիրը այդ բնագավառում աշխատավորության մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումն է։

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում ելույթ ունեցողներից շատերը բազմակողմանիորեն արծարծեցին սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության, կոմունիստական բարոյականության նորմերի, սովետական օրենքների ու սոցիալիստական համակեցության կանոնների խստագույն պահպանման ոգով աշխատավորության դաստիարակության հույժ կարևորությունը և այդ առումով կուսակցական կազմակերպությունների առջև ծառացած գաղափարա-քաղաքական կոնկրետ խնդիրները։

Հաշվետու-ընտրական ժողովներում բազմակողմանիորեն և խորությամբ վերլուծվեց ներկուսակցական աշխատանքի վիճակը սկզբնական կուսակցական կազմակերպություններում։ Նշելով ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման և կուսակցական կարգապահության հետագա ամրապնդման հիման վրա կոմունիստների ակտիվության բարձրացման ասպարեզում կատարված դրական աշխատանքը, ժողովների մասնակիցները միաժամանակ անհրաժեշտ համարեցին ավելի ուժեղացնել այդ աշխատանքը՝ շեշտելով, որ յուրաքանչյուր կոմունիստ միշտ պետք է հիշի այն մեծ պատասխանատվությունը, որը բխում կուսակցության անդամի վեհ կոչումից։

Ժողովներում կարևոր ուշադրություն է նվիրվել նաև կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության, կուսակցական, պետական ու տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում աշխատանքի լենինյան ոճի արմատավորման հարցերին։

Հանրապետության սկզբնական կուսակցական կազմակերպությունների հերթական հաշվետու-ընտրական ժողովները նպաստեցին նրանց ղեկավար մարմինների և քարտուղարների որակական կազմի բարելավմանն ու ամրապնդմանը։ Արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի ու կապի ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կուսբյուրոների կազմում ընտրվածների կեսից ավելին բանվորներ ու կոլտնտեսականներ են։ Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների 99,6 տոկոսն ունի բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն, նրանց մոտ 30 տոկոսը կանայք են։

Ի դեպ, հաշվետու-ընտրական ժողովների առանձնահատկություններից մեկը դրանց նախապատրաստության և անցկացման բարձր մակարդակն է։ Պետք է նշել, որ դրանք մեծ մասամբ անցան պատշաճ կազմակերպվածության ու գործնականության, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում։

Պրակտիկան ցույց է տալիս, որ այնտեղ, ուր սկզբնական կուսկազմակերպությունը մարտունակ է, բարձր է կոմունիստների ակտիվությունը, լուրջ ուշադրություն է նվիրվում ժողովների նախապատրաստությանը, այդ գործում ներգրավվում են կազմակերպության բոլոր անդամները, ապա ժողովը, որպես կանոն, ծառայում է իր նպատակին, խոր հետք է թողնում տվյալ կոլեկտիվի կյանքում։ Երևանի «Պլաստիկ» արտադրական միավորման սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովի նախապատրաստությունն սկսվել էր շատ վաղուց։ Այդ գործում ներգրավվել էին ոչ միայն կուսբյուրոյի անդամները, այլև՝ կոմունիստների ճնշող մեծամասնությունը։ Կոլեկտիվ աշխատանքով կազմված հաշվետու զեկուցումը, կոմունիստների բարձր ակտիվությունն ու սկզբունքային, գործնական ելույթները պայմանավորեցին կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովի քաղաքական, կազմակեր-



պական բարձր մակարդակը։ Առողջ քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների ոգով համակողմանիորեն վերլուծվեց միավորումում գործերի, կուսկազմակերպության քաղաքական ու կազմակերպական գործունեության վիճակը, վեր հանվեցին եղած թերություններն ու վրիպումները, մշակվեց հետագա գործունեության կոնկրետ ծրագիր։

Հաշվետու-ընտրական ժողովները քաղաքական ու կազմակերպական բարձր մակարդակով նախապատրաստվեցին ու անցկացվեցին նաև Հայկական ՍՍՀ ավտոտրանսպորտի մինիստրության ապարատի, Երևանի էլեկտրալամպերի գործարանի, Լենինականի տեքստիլ կոմբինատի, Անդրերկաթուղու Երևանի լոկոմոտիվային դեպոյի, Արտաշատի շրջանի Ջրաշենի կոլտնտեսության, Ղուկասյանի շրջանի Մուսայելյանի սովխոզի և հանրապետության շատ ու շատ այլ սկզբնական կուսակցական կազմակերպություններում։

Կուսակցական հաշվետու-ընտրական կամպանիայի բարձր մակարդակով նախապատրաստությունն ու անցկացումը հիմնականում պայմանավորված էր ՀԿԿ Կենտկոմի, կուսակցության քաղկոմ-շրջկոմների կողմից այդ նպատակով մշակված կոմպլեքսային միջոցառումների կենսագործմամբ։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, քաղկոմ-շրջկոմները վերջին տարիներս լուրջ նշանակություն են տալիս սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստությանն ու անցկացմանը ՀԿԿ Կենտկոմի և քաղկոմ-շրջկոմների անդամներին, անդամության թեկնածուներին, վերստուգիչ հանձնաժողովների անդամներին, ապարատների, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավար աշխատողներին մասնակից դարձնելուն։ Բավական է նշել, որ միայն ՀԿԿ Կենտկոմի ներկայացուցիչները մասնակցել են 1066 սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներին. դա կրկնակի անգամ ավելի է, քան նախորդ հաշվետու-ընտրական կամպանիայի ժամանակ։ Հատկանշական է, որ այդ աշխատանքներում լայնորեն ներգրավվում են նաև կուսակցական ղեկավար մարմիններում ընտրված արտադրության շարքային աշխատողները։ ՀԿԿ Կենտկոմի կազմում ընտրված շարքային կոմունիստները մասնակցել են 108 սկզբնական կուսկազմակերպությունների ժողովների։ Գոհունակությամբ կարելի է նշել այդ գործում ներգրավված ՀԿԿ Կենտկոմի անդամներ, Լենինականի տեքստիլ կոմբինատի գործվածքային ֆաբրիկայի ջուլհակուհի Մարիամ Հովհաննիսյանի, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի բանվորուհի Գոհար Ղազարյանի, Իջևանի շրջանի Այգեհովիտի սովխոզի օղակավարուհի Զինա Ալավերդյանի, ՀԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուներ, Երևանի պոլիգրաֆ կոմբինատի բանվորուհի Սիմա Դավթյանի, Կալինինոյի շրջանի Լոռվա տոհմաբուծական սովխոզի անասնապահ Մարիա Զերուրչիանի ակտիվ ու բարեխիղճ աշխատանքը։

Փորձը ցույց է տալիս, որ սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներին այդպիսի ընկերների, ինչպես և պատասխանատու աշխատողների ներկայությունն էապես նպաստում է կոմունիստների ակտիվության բարձրացմանը, նման հանդիպումից մարդիկ շատ բան են սպասում։ Նրանք հույս ունեն վերադաս մարմինների ներկայացուցիչներից լսելու ոչ միայն կուսկազմակերպության գործերի վիճակի օբյեկտիվ գնահատականը, այլև՝ ստանալու արժեքավոր հանձնարարական, ընկերական խորհուրդ, պրակտիկ օգնություն։ Նկատի ունենալով այդ հանգամանքը՝ ՀԿԿ Կենտկոմը, քաղկոմ-շրջկոմները ժամանակին հոգացին, որպեսզի վերադաս մարմինների ներկայացուցիչները տեղերում սոսկ հանդես չգան իբրև «պատվավոր», հեղինակավոր լիազորներ, այլ ակտիվորեն մասնակցեն ժողովների բարձր մակարդակով նախապատրաստմանն ու անցկացմանը։ Այդ նպատակով գործուղված ընկերների ճնշող մեծամասնությունը տեղերն է մեկնել ժողովներից շատ առաջ, զրուցել կոմունիստների հետ, եղել արտադրամասերում, խորացել գործերի իրավիճակում։ Հասկանալի է, որ միայն այս դեպքում կապահովվեին ժողովներին նրանց մասնակցության արդյունավետությունը, նրանց ելույթներում արված եզրահանգումների ու առաջարկությունների հիմնավորվածությունը։

Այժմ, երբ ամփոփվել են կուսակցական հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները, գոհունակությամբ ենք արձանագրում, որ սկզբնական կուսկազմակերպություններում վերադաս մարմինների ներկայացուցիչների ներկայությունն զգալիորեն նպաստել է ժողովների բարձր մակարդակով նախապատրաստմանն ու անցկացմանը: Բայց սկզբնական կուսկազմակերպություններում ժողովների նախապատրաստման և անցկացման նպատակով կուսակցական կոմիտեների ներկայացուցիչների գործուղումները չպետք է էպիզոդիկ բնույթ կրեն: Այդ միջոցառման կարևորությունն ու օգտակարությունը չպետք է սահմանափակվի լոկ հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստության հարցերով:

ՀԿԿ Կենտկոմը մտադիր է առաջիկայում ևս շարունակել այդ կուրսը այն միտումով, որպեսզի սկզբնական կուսակցական կազմակերպություններին ցույց տրվող պրակտիկ օգնությունը դառնա սիստեմատիկ, մշտական, միաժամանակ տեղերում գործերի վիճակի համար բարձրացվի կուսակցական կոմիտեների կազմում ընտրված ընկերների պատասխանատվությունը:

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԻ ընթացքն ու արդյունքները միաժամանակ ցույց տվեցին, որ դեռևս ոչ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններն են կազմակերպչորեն ամրապնդված: Եվ պատահական չէ, որ նման կազմակերպություններում հաշվետու ժողովներն անցան կազմակերպական ու գաղափարական ցածր մակարդակով, կոմունիստների պասիվ մասնակցությամբ: «Երհացառի» սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում բացակայում էին գործնական քննադատությունը և հատկապես ինքնաքննադատությունը: Հանրապետության կենցաղսպասարկման մինիստրության «Միածան» կոմբինատի կուսկազմակերպության ժողովում շրջանցվեցին ձեռնարկությունում եղած չլուծված պրոբլեմները, ստեղծված անառողջ մթնոլորտը, չնայած որ այդ հարցերի սկզբունքային քննարկումն անչափ կարևոր էր: Երևանի № 2 տաքսոմոտորային ձեռնարկության սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում նախապես կազմված գրավոր ելույթների սահմաններից դուրս չգալու մտավախությունը կաշկանդեց մտքերի փոխանակությանը մասնակցած մյուս կոմունիստներին՝ սրությամբ և համարձակությամբ արտահայտելու իրենց մտքերն ու առաջարկությունները:

Արարատի շրջանի Կիրովի անվան սովխոզ-գործարանի սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում ինչպես հաշվետու զեկուցման մեջ, այնպես էլ ելույթներում ավելի շատ խոսվել է ձեռք բերված տնտեսական նվաճումների և դրանցում իրենց մասնակցության, քան եղած թերությունների ու դրանց վերացման մասին:

Հաշվետու-ընտրական ժողովին նախապատրաստված չէին ներկայացել նաև արդյունաբերական շինարարության մինիստրության ապարատի կոմունիստները: Այդ իսկ պատճառով հիշյալ ժողովն անցավ կազմակերպական-քաղաքական ցածր մակարդակով: Հաշվետու զեկուցման մեջ, ելույթներում բացակայում էր կուսբյուրոյի գործունեության վերլուծությունը, չկային ընդհանրացումներ, կոնկրետություն, եզրահանգումներ: Բնորոշ է, որ ժողովում չմշակվեցին գոյություն ունեցող էական թերությունների հաղթահարման ու վերացման միջոցները, չնշվեցին անելիքները: Մինիստրության ապարատի կուսկազմակերպության հաշվետու ժողովը ցույց տվեց, որ հաշվետու ժամանակաշրջանում կազմակերպությանը չի հաջողվել վճռական ազդեցություն ունենալ գործերի վիճակի բարելավման, ապարատի կոմունիստների պատասխանատվության բարձրացման, կատարողական կարգապահության ամրապնդման պրակտիկայի վրա:

ՀԿԿ Կենտկոմը, քաղկոմ-շրջկոմներն ամփոփել են հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները, ընդհանրացրել կուտակված դրական աշխատանքի փորձը, մանրակրկիտ վերլուծել առկա թերությունների պատճառները և կոնկրետ միջոցառումներ մշակել՝ սկզբնական կուսկազմակերպություններին ցույց



տրվող օգնության և ղեկավարության ուժեղացման, ընտրովի ակտիվի ուսուցման գործի կազմակերպման, ժողովներում արված քննադատական դիտողությունների ու արժեքավոր առաջարկությունների կենսագործման նպատակով:

Կուսակցության մի շարք քաղկոմ-շրջկոմներ (Երևանի, Լենինականի, Կիրովականի, Արտաշատի, Օրջոնիկիձեի, Էջմիածնի, Գորիսի և այլն) հաշվետու-ընտրական ժողովների անցկացման ընթացքում ամեն օր անդրադառնում էին ժողովներում արված քննադատական դիտողություններին և գործնական միջոցներ ձեռնարկում դրանց ընթացք տալու համար: Հանրապետական մարմինների հասցեին արված քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կապակցությամբ ժամանակին տրվել են հանձնարարականներ այդ կազմակերպություններին: Խնդիրը, սակայն, դրանով չի սահմանափակվում: Դա լոկ գործի սկիզբն է, հարկավոր է նաև հետամուտ լինել դրանց կատարմանը: Կուսակցության քաղկոմ-շրջկոմները պարտավոր են խիստ հսկողություն սահմանել համապատասխան մինիստրությունների, գերատեսչությունների, հիմնարկ-ձեռնարկությունների ու կազմակերպությունների կողմից քննադատական դիտողությունների կենսագործման ընթացքի վրա: Ընդ որում, այդ գործում պետք է ապահովել լայն հրապարակայնություն: Կատարման ընթացքի մասին անհրաժեշտ է պարբերաբար հաղորդել կոմունիստներին: Յուրաքանչյուր կոմունիստ պետք է վստահ լինի, որ իր ճիշտ խոսքը տեղ կհասնի, արդարացի, սկզբունքային քննադատությունը անհետևանք չի մնա: Դա է կոմունիստների ակտիվության բարձրացման ու ստեղծագործական նախաձեռնության զարգացման, կուսկազմակերպությունների մարտունակության հետագա ամրապնդման գրավականը:

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում արված քննադատական դիտողություններն ու առաջարկությունները պետք է արտացոլվեն նաև կուսակցական կոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքային պլաններում: Ցանկալի է, որ կուսկոմիտեների պլենումներում, բյուրոների նիստերում, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում հաճախակի քննարկվեր քննադատական դիտողությունների կենսագործման ընթացքը:

Սկզբնական կուսկազմակերպությունների առաջիկա գործունեության ողջ ծրագիրը արտացոլված է հաշվետու-ընտրական ժողովներում ընդունված որոշումներում: Խնդիրն այն է, որ նշված միջոցառումների անվերապահ կատարումն անհապաղ վերցվի հսկողության տակ:

Կոմունիստների, ողջ աշխատավորների ջանքերն անհրաժեշտ է գործադրել այնպես, որ ամենօրյա պրակտիկ գործունեության ընթացքում հայտաբերվեն և լիովին օգտագործվեն առկա բազմաթիվ ռեզերվներն ու հնարավորությունները: Կուսակցական կոմիտեները, սկզբնական կուսկազմակերպությունները պարտավոր են ամենուրեք պաշտպանել ու տարածել նորարարական առաջարկները, հայրենասիրական նախաձեռնությունները, վճռականորեն վերացնել այն ամենը, ինչը խանգարում է ստեղծագործական աշխատանքին, նորի, առաջավորի զարգացմանը և մեր առաջընթացին:

ԱՅԺՄ, ԵՐԲ ԹԵՎԱԿՈԽԵԼ ԵՆՔ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ երկրորդ տարին, անհրաժեշտ է սոցիալիստական նոր պարտավորություններ ստանձնելու կապակցությամբ ակտիվ աշխատանք ծավալել աշխատավորության շրջանում: Այստեղ գործունեության լայն ասպարեզ է բացվում կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական մարմինների համար: Սոցիալիստական պարտավորությունների ստանձնման գործում աշխատավորական լայն զանգվածների ներգրավումը նշանակում է համախմբել նրանց ստեղծագործական ուժերը, արկանել պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման ամուր հիմքերը: Պետք է հասնել այն բանին, որ աշխատավորական յուրաքանչյուր կոլեկտիվ, ամեն մի անհատ ներգրավվի սոցիալիստական մրցության մեջ, լավ իմանա իր կոլեկտիվի, արտադրամասի, բրիգադայի ոչ միայն 1977 թվականի, այլև ողջ հնգամյակի հեռանկարն ու

կոնկրետ խնդիրը և իր աշխատանքով ձգտի ապահովելու դրանց կատարումը։

«Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի ընթացիկ տարվա հունվարին ընդունած որոշմամբ կուսակցական, սովետական, տնտեսական և հասարակական մարմինների ու կազմակերպությունների առջև խնդիր է դրվում՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը արժանավայել դիմավորելու նպատակով լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, օգտագործել դրա հսկայական հնարավորությունները սովետական պետության տնտեսական հզորության հետագա ամրապնդման, ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության բարելավման, սոցիալիստական ապրելակերպի զարգացման համար։ Մեր հանրապետության կուսակցական կոմիտեների ու սկզբնական կուսկազմակերպությունների պարտքն է՝ մոբիլիզացնել կոմունիստների, ողջ աշխատավորության ուժերը այդ որոշմամբ առաջադրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

ՍՄԿԿ XXV համագումարն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության հետագա ամրապնդմանը՝ որպես տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերի վրա կուսակցական ազդեցության ուժեղացման կարևորագույն նախապայման։

Կուսակցական կոմիտեները կոչված են ապահովելու կուսակցության հիմքի, նրա հիմնական օղակների նկատմամբ շերտավորված ղեկավարություն, հոգալու նորընտիր կուսակցական ակտիվի ուսուցման ու հրահանգավորման մասին։

Անցկացված կուսակցական-հաշվետու ընտրական կամպանիայի արդյունքների համակողմանի ու խոր վերլուծությունը, դրական փորձի ընդհանրացումը, կոմունիստների քննադատական դիտողությունների ու արժեքավոր առաջարկությունների ուսումնասիրումն ու կենսագործումը 1977 թվականի հոբելյանական տարում կոմունիստական շինարարության ասպարեզում նորանոր հաջողությունների ձեռք բերման վճռական գրավականն են։

# ՄՐՑՈՒԹՅԱՆ ԽՈՐ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀԿԿ Մասիսի շրջկոմի առաջին քարտուղար

*Մ*ԱՍԻՍԻ XXII ԿՈՒՍՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ անվան սովխոզը շրջանի ամենախոշոր տնտեսությունն է։ Բայց ամենից բնորոշն այն է, որ այստեղ անթերի են կատարվում գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների պետական առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները։ Արտադրության համաչափ զարգացումն ապահովելու, եղած հնարավորություններն ու ռեզերվներն արդյունավետ օգտագործելու շնորհիվ տնտեսության հողագործներն ու անասնապահներն աշխատանքային ակնառու հաջողությունների հասան հատկապես անցած հնգամյակում։ Բավական է միայն նշել, որ հնգամյա պլանի գերակատարման հաշվին պետությանն է հանձնվել յոթ հազար տոննա բանջարեղեն, 270 տոննա կարտոֆիլ, 1.440 տոննա խաղող, 800 ցենտներ միս, 900 ցենտներ կաթ և գյուղատնտեսական այլ մթերքներ։

Ամենից կարևորն այն է, որ սովխոզի արտադրական բոլոր ճյուղերն էլ շահութաբեր են։ 1975 թվականին, օրինակ, պլանավորված 70 հազարի դիմաց, օգուտները կազմել են 119 հազար ռուբլի։ Պետական բոլոր առաջադրանքներն զգալիորեն գերակատարելու, սոցիալիստական մրցության մեջ առավել բարձր ցուցանիշների հասնելու համար 1972 թ. սովխոզը պարգևատրվել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի հոբելյանական պատվո նշանով, իսկ 1975 թ. արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Սովխոզում գործերը լավ են ընթանում նաև տասներորդ հնգամյակի առաջին իսկ օրից։ Անասնապահներն զգալիորեն գերակատարեցին մթերքների արտադրության ու մթերումների անցած տարվա առաջադրանքները։ Բանջարաբույծներն ու այգեգործները լավ բերք աճեցրին և այժմ շարունակում են պայքարը՝ հնգամյակի երկրորդ տարում ևս բարձր արդյունքի հասնելու համար։ Հավատարիմ մնալով իրենց աշխատանքային լավագույն ավանդույթներին, տնտեսության մարդիկ ստեղծում են բոլոր նախադրյալները՝ նոր հնգամյակը արտադրական բարձր ցուցանիշներով եզրափակելու համար։

Ինչո՞վ բացատրել այդ աննախադեպ հաջողությունները։ Ամենից առաջ պետք է նշել, որ տնտեսությունում լուրջ ուշադրություն է նվիրվում սոցիալիստական մրցության կազմակերպմանը։ Այստեղ միմյանց հետ մրցում են բոլորը՝ բրիգադները, օղակները, բանվորները։ Մրցությանը տոն են տալիս կոմունիստները, որոնք աշխատում են արտադրության վճռական տեղամասերում։ Մրցության առաջավորներին խրախուսելու համար սահմանվել են նյութական ու բարոյական խթանման մի շարք արդյունավետ միջոցներ։ Անցած տարում այդ նպատակին հատկացվել է 10 հազար ռուբլի։

Սովխոզի դիրեկցիան, կուսակցական ու արհմիութենական կոմիտեները մրցության արդյունքները սովորաբար ամփոփում են յուրաքանչյուր ամսվա վերջում, իսկ այգեփորի ու բերքահավաքի եռուն շրջանում՝ տասնօրյակը մեկ,

Մրցության արդյունքների հրապարակայնության համար կուսշրջկոմն օգտագործում է բազմազան միջոցներ և, ամենից առաջ՝ շրջանային «Նոր ուղի» թերթը։ Ստուգում ենք մրցության արդյունքները, Ով ինչպես է կատարում իր պարտավորությունները, Սոցիալիստական մրցության օրագիրը և այլ խորագրերով թերթը պարբերաբար տպագրում է կարճ լուրեր ու հաղորդումներ, տնտեսությունների ու ձեռնարկությունների ղեկավարների, մասնագետների, արտադրության առաջավորների ելույթներ, ստուգայցային հոդվածներ, ամփոփագրեր։ Ի դեպ, անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների ամփոփագրերը տպագրվում են յուրաքանչյուր ամսվա, իսկ խոտի կուտակման ու բանջարեղենի մթերումների ամփոփագրերը՝ յուրաքանչյուր շաբաթվա վերջում։

Մեզ հավասարապես հետաքրքրում են նաև մեր մրցակիցների արդյունքները։ Այդ նպատակով պլանավորված ձևով ինֆորմացիաներ ենք փոխանակում Էջմիածնի, Ապշերոնի, Գարդաբանի և Մեդվեդևի կուսշրջկոմների հետ։ Մրցակից շրջանների մրցության արդյունքները եռամսյակը մեկ հրապարակվում են կուսշրջկոմում ստեղծված ցուցափեղկում։

Մրցության արդյունքների հրապարակայնության արդյունավետ միջոցներ են սահմանվել բոլոր տնտեսություններում։ Լայն մասսայականություն են վայելում հատկապես սոցիալիստական մրցության տախտակները։ Դրանցում ամեն երեկո գրանցվում են կթվորների, իսկ բերքահավաքի ժամանակ՝ բրիգադների տվյալ օրվա ցուցանիշները։

Մրցության արդյունքների հրապարակայնության ապահովումը լայն հնարավորություն է ընձեռում անընդհատ հետևելու մրցության ընթացքին, իմանալու, թե մրցակիցների մոտ ինչպես են ընթանում գործերը, ինչ պետք է անել նրանցից ետ չմնալու համար։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ լենինյան սկզբունքներից մեկն էլ մրցության արդյունքների համեմատելիությունն է, համադրությունը։ Մրցակիցների աշխատանքի արդյունքների ճիշտ համեմատման դեպքում մրցությունը դառնում է ավելի ներգործուն, խթանող։ Դրա համար մենք համեմատում ենք ընթացիկ և նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի արդյունքները և առաջնությունը տալիս այն կոլեկտիվներին ու աշխատողներին, որոնք ապահովել են արտադրության ավելի բարձր աճ։ Այդ մրցողների մոտ մեծ ձգտում է առաջացնում՝ մշտապես ապահովելու արտադրության բարձր տեմպեր։ 1976 թ., երբ կուսշրջկոմի բյուրոյում ամփոփում էինք առաջին կիսամյակի մրցության արդյունքները, ամենատարբեր կարծիքներ հայտնվեցին. ո՞ր տնտեսությանը հանձնել կուսշրջկոմի ու շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։ Որոշվեց այն շնորհել Մարմարաշենի կոլտնտեսությանը։ Չնայած մարմարաշենցիները ընդհանրապես բարձր ցուցանիշներ չունեն (խոսքն այստեղ վերաբերում է մեկ կովի կաթնատվությանը), բայց կարողացել են, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ապահովել անասնապահական մթերքների արտադրության ավելի բարձր աճ։

ԲԱՐՈՅԱԿԱՆ ԵՎ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԽՐԱԽՈՒՍԱՆՔԸ, դրանց ճիշտ զուգակցումը մրցության արդյունավետության էական գործոններ են։ Կուսշրջկոմը և շրջսովետի գործկոմը միշտ էլ մեծ կարևորություն են տալիս խրախուսման ձևերի կիրառմանը, մարդկանց ջանքերի՝ ըստ արժանվույն գնահատմանը։ Փոխանցիկ կարմիր դրոշներ ենք սահմանել նաև բանջարաբույծների և այգեգործների, արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, մատակարարող և սպասարկող կազմակերպությունների կոլեկտիվների համար։ Առաջավոր տնտեսություններին, բրիգադներին, ֆերմաներին և առանձին աշխատողների հանձնվում են նաև փոխանցիկ հուշադրոշներ։ Բերքահավաքի ընթացքում մրցության առաջավորները ներկայացվում են շրջանային «Նոր ուղի» թերթի պատվո տախտակին։

Անցած տարի սկսեցինք արտադրության առաջավորներին պարգևատրել կուսշրջկոմի դիպլոմներով և շրջսովետի գործկոմի պատվոգրերով՝ ընդօրինակել ենք մեր մրցակից մեդվեդևցիներին։ Նրանց օրինակով հրապարակում ենք նաև մարտական ու տնտեսագիտական թերթիկներ, եռամսյակը մեկ՝ հատուկ բյուլետեններ։ Լավագույն աշխատողների անունները գրանցվում են կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի պատվո գրքում, լուսանկարները փակցվում շրջանային պատվո տախտակին, ամենաառաջավորները ներկայացվում կառավարական պարգևների։ Մրցության առաջավորների բարոյական խրախուսման միջոցներ են սահմանել բոլոր կուսկազմակերպությունները։

Սոցմրցության ճիշտ կազմակերպման գործում հույժ կարևոր է դրա արդյունքների ժամանակին ամփոփումը։ Որպես կանոն, անասնապահների, արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, մատակարարող և սպասարկող կազմակերպությունների աշխատողների սոցիալիստական մրցության արդյունքները հանրագումարի են բերվում եռամսյակը մեկ, իսկ հողագործներինը՝ տարվա վերջում։

Սոցիալիստական մրցության արդյունքների սիստեմատիկ ամփոփումը, առաջավորների խթանումը, նյութական ու բարոյական խրախուսանքի խելացի զուգակցումը որոշիչ դեր են խաղում մրցության գործարարության ապահովման գործում։ Դրան մեծապես նպաստում են նաև շրջանում պարբերաբար կազմակերպվող հարվածային տասնօրյակները, միամսյակները։ Այդ ընթացքում սովորաբար սահմանում ենք մրցության առաջավորների խրախուսման լրացուցիչ միջոցներ։ Օգոստոսը մեզ մոտ ամեն տարի հայտարարվում է բանջարանոցային կուլտուրաների բերքահավաքի հարվածային միամսյակ։ Այն բանջարաբույծները, որոնք միամսյակի ընթացքում ավելի շատ բերք են հավաքում, պարգևատրվում են հանգստյան տների, տուրիստական և ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի ուղեգրերով։ Ամեն մի կոլտնտեսական ու բանվոր, զգալով, որ իր աշխատանքը գնահատվում է ըստ արժանվույն, ավելի լավ է աշխատում, ձգտում ավելի բարձր արդյունքների։ Եվ հենց դրանում է սոցիալիստական մրցության բուն իմաստը։

Կուսակցության XXV համագումարն ընթացիկ հնգամյակը հայտարարեց արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման հնգամյակ։ Այդ արտացոլվել է նաև սոցիալիստական մրցության մեջ։ Աշխատավորական բոլոր կոլեկտիվներում լայն պայքար է ծավալվել ո՛չ միայն լավագույն արդյունքների, այլև աշխատանքի ու արտադրանքի բարձր որակի համար։ Դրա արդյու՞նքը. անցած ժամանակամիջոցում շրջանի արդյունաբերության աշխատողները ոչ մի բողոքարկ չեն ստացել պատվիրատուներից։ Անհամեմատ բարելավվել է նաև շինարարության որակը։

Գյուղի մարդիկ առևտրական կազմակերպություններին հանձնում են ավելի բարձրորակ մթերքներ։ Ինտենսիվացման առաջավոր մեթոդի արմատավորման շնորհիվ մթերակայան են հանձնվում միայն գեր անասուններ։ Հանձնվող կաթի մեծ մասը առաջին կարգի է։ Սպառողները գոհ են նաև շրջանում ստացվող հողագործական մթերքների որակից։ Եվ հենց դրանով պետք է բացատրել, որ ստացված ամբողջ կարտոֆիլը հաջողությամբ է իրացվել, առևտրական կազմակերպությունները չեն վերադարձրել ոչ մի կիլոգրամ բանջարեղեն։

Սոցիալիստական մրցության բնորոշ հատկանիշներից մեկն էլ արդյունավետ փոխօգնությունն է։ Մրցել՝ միաժամանակ նշանակում է օգնել, բարեկամական ձեռք մեկնել իրար։ Այդպես են վարվում մեր շրջանի մրցակից տնտեսությունները։ Խոսենք փաստերով. շրջկենտրոնի սովխոզի այգեգործները սովորաբար լուրջ դժվարություններ են հանդիպում այգեթաղի ժամանակ։ Այդ օրերին ջրահովիտցիները, որոնք քիչ այգիներ ունեն, իրենց գործն ավարտելուց հետո, հայտնվում են նրանց կողքին։ Ենգիջայի սովխոզը հացահատիկային կոմբայն չունի։ Եվ պետք էլ չէ, որ ունենա, որովհետև քիչ հացահատիկ է մշակում, սակայն նրա արտերն առանց հնձելու չեն մնում, որովհետև մրցակից տնտեսությունը՝ Գեղանիստի սովխոզը, միշտ էլ մեծ սիրով նրան է տրամադրում իր կոմբայնը։ Բազմաթիվ են նման օրինակները։

Փոխօգնությունը բնորոշ է դարձել նաև մեր ու մրցակից շրջանների համար: Սերտ կապեր են հաստատվել հատկապես մեր և Մեղվեդևի շրջանների միջև: Մեղվեդևցիներն են մեզ տրամադրել Նոր Խարբերդի կոլտնտեսությունում կառուցված թռչնաբուծական համալիրի առաջին գիծը: Շուտով կտացվի նաև երկրորդ գիծը, ինչպես նաև՝ «Կրոս—288» նոր հիբրիդի 40 հազար ձու՝ կոլտնտեսությունում ինկուբացիայի ենթարկելու համար:

Կարտոֆիլը մեր շրջանում բարձր արդյունք է տալիս: Սակայն, անհրաժեշտ քանակությամբ սերմ չունենալու պատճառով, մենք չենք կարողանում ընդարձակել դրա ցանքատարածությունը: Մեղվեդևցիները պատրաստակամություն են հայտնել՝ մեզ ապահովել կարտոֆիլի բարձրորակ սերմացուով: Բայց ո՛չ միայն այդ: Մենք մեղվեդևիցներից կստանանք նաև սև-խայտաբղետ ցեղի երինջներ: Դա որոշիչ նշանակություն կունենա շրջանում անասնապահության հետագա զարգացման համար: Մենք էլ պարտքի տակ չենք մնում: Մեղվեդևցիներին ուղարկում ենք խիճ՝ ճանապարհաշինության համար, վաղահաս կարտոֆիլ, պոմիդոր, կօգնենք նաև զարգացնելու բանջարաբուծությունը, արմատավորելու շավղարի մշակությունը: Նման կապեր կհաստատվեն նաև Աշտարակի և Գարդաբանիի շրջանների հետ: Մրցությունն այդ շրջանների հետ աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության դպրոց է: Այն օգնում է՝ երկուստեք ծանոթանալու մեր ժողովուրդների պատմությանը, մշակույթին, հաստատելու սերտ բարեկամություն:

Կուսակցության XXV համագումարում ընկեր Բրեժնևը շեշտեց, որ մասսաների քաղաքական և աշխատանքային դաստիարակության սերտ միաձուլման ակնբախ արդյունքը սոցիալիստական մրցության այժմյան վերելքն է: «Մենք ամենքս ուրախանում ենք, թե ինչպիսի խոր արմատներ են արձակել սոցիալիստական մրցության լենինյան գաղափարները... Մրցությունը խոր ազդեցություն է գործում տնտեսական պրակտիկայի վրա, երկրի հասարակական-քաղաքական կյանքի վրա, բարոյական մթնոլորտի վրա: Այսուհետև էլ համակողմանիորեն զարգացնել սոցիալիստական մրցությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը՝ այսպիսին է մեր ընդհանուր մարտական լոզունգը (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության ներքական խնդիրները ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., 1976, էջ 126—127):

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, առաջնորդվելով այդ մարտական կոչով, ձեռնարկել են բոլոր միջոցները՝ սոցիալիստական մրցությունն ավելի զարգացնելու, աշխատավորների ակտիվությունն ըստ ամենայնի բարձրացնելու, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների անշեղ իրականացման համար:

Դրա վկայությունը տասներորդ հնգամյակի առաջին տարվա բարձր արդյունքներն են: Անցած տարի կատարեցինք ու գերակատարեցինք անասնապահական ու հողագործական բոլոր մթերքների (բացառությամբ խաղողի) արտադրության ու մթերումների պլան-պարտավորությունները: Նախատեսված 47 հազար տոննայի փոխարեն, օրինակ, պետությանը վաճառեցինք 52.600 տոննա բանջարեղեն, չորս անգամ գերազանցեցինք հացահատիկի վաճառքի առաջադրանքը:

Մասիսի շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները, ծանոթանալով «Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմանը, նոր թափ են հաղորդում սոցիալիստական մրցությանը, մշակում այն արդյունավետ դարձնելու միջոցառումներ: Աշխատավորական կոլեկտիվները, ոգեշնչված այդ որոշմամբ, ստանձնում են նոր, բարձր պարտավորություններ, պատրաստակամություն հայտնում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը նշանավորել աննախադեպ նվաճումներով: Սոցմրցության վերաբերյալ այդ որոշումը գործողության ուղեցույց կլինի մեզ համար ընթացիկ հոբելյանական տարում:

# ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

**Ս. ՄԱԿԱՐՈՎ**

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ առաջադրած խնդիրների հաջող լուծումը մեծապես պայմանավորված է կառավարման կազմակերպմամբ, որի օգնությամբ կոորդինացվում են տասնյակ հազարավոր աշխատանքային կոլեկտիվների գործունեությունը, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում զբաղված միլիոնավոր մարդկանց աշխատանքը: Կառավարումը սոցիալիստական էկոնոմիկայի պլանաչափ զարգացման պարտադիր, կուսակցության տնտեսական ստրատեգիայի, քաղաքականության իրականացման անհրաժեշտ պայմանն է, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն լծակը:

Ահա ինչու կուսակցության XXV համագումարը նշեց, որ էկոնոմիկայի կառավարումը, մեր հասարակության տնտեսական մեխանիզմն անհրաժեշտ են բարձրացնել արդի փուլին՝ հասուն սոցիալիզմի փուլին, համապատասխանող նոր պահանջների մակարդակին:

Ժողովրդական տնտեսության կառավարման որակով մեծապես պայմանավորված են արտադրաուժերի զարգացման տեմպերը, ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրայի մակարդակը, կոմունիստական շինարարության ընդհանուր հաջողությունները: Ժողովրդական տնտեսության կառավարումը կատարելագործելու արդի պրոբլեմների ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում՝ ավելի խոր յուրացնելու կուսակցության տնտեսական քաղաքականության էությունը, հասկանալու ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների կատարման համար մեր երկրի ունեցած կոնկրետ միջոցների բնույթը, աշխատանքային կոլեկտիվների, առանձին աշխատողների տեղն ու դերը տնտեսական շինարարության մեջ:

Կոնսուլտացիայում քննության են առնվում հետևյալ հարցերը.

1. Էկոնոմիկայի կառավարման կատարելագործումը կոմպլեքսային պրոբլեմ է:

2. Վերջնական ժողովրդատնտեսական արդյունքների նկատմամբ կողմնորոշումը կառավարման կարևորագույն խնդիր է:

1

Սոցիալիստական ընդլայնված վերարտադրության ընթացքում ամրապնդվում է հասարակարգի նյութատեխնիկական բազան, խորանում աշխատանքի բաժանումը, զարգանում են սոցիալիստական հասարակական հարաբերությունները: Այս ամենն էլ հենց պայմանավորում է էկոնոմիկայի կառավար-

սակցության պահանջը՝ աշխատել ավելի լավ, աշխատել ավելի արդյունավետ, աշխատել առավելագույն փոխհատուցմամբ»:

Պլանավորման ձևերի ու մեթոդների խիստ համաձայնեցում տնտհաշվարկային մեխանիզմի գործողության հետ, պլանային ու տնտհաշվարկային ցուցանիշների, տնտեսական լծակների ու խթանների առավել լրիվ համապատասխանության ձեռքբերում՝ ահա դրանում է ակնառու կերպով դրսևորվում գիտական մոտեցումը սոցիալիզմի տնտեսական օրենքների կիրառման հանդեպ. ամենից առաջ այնպիսի օրենքների, ինչպիսիք են՝ հիմնական տնտեսական, պլանաչափ զարգացման, աշխատանքի արտադրողականության անշեղ աճի, ըստ աշխատանքի բաշխման, արժեքի օրենքները և այլն: Եվ այդ խնդրի լուծումը կարող է ապահովվել կենտրոնական ու տեղական կառավարչական մարմինների, կոնկրետ արտադրական կոլեկտիվների համատեղ ջանքերով միայն՝ այդ հարցերի նկատմամբ կուսակցական կազմակերպությունների և կոմիտեների մշտական ուշադրության պայմանով: Վերջին հաշվով, պլանային կառավարման ողջ պրոցեսը կառուցվում է այն բազմապիսի տեղեկությունների, հաշվարկների, առաջարկությունների հիման վրա, որ վերադաս տնտեսական կառավարչական մարմիններին են ներկայացնում արտադրական կոլեկտիվները: Բացի դրանից, վերջիններս հնարավորություն ունեն, ինքնուրույն կերպով կամ ղեկավար մարմինների հետ համաձայնեցնելով, այս կամ այն փոփոխությունը մտցնել իրենց պլաններում, ինչպես նաև խթանման մեխանիզմի, կառավարման կազմակերպման ձևերի ու մեթոդների մեջ, որպեսզի ամենալավագույն ձևով ապահովեն պետական պլանային առաջադրանքների կատարումն ու գերակատարումը: Գործի նկատմամբ նման մոտեցումը հնարավորություն է ընձեռում ստեղծել ժողովրդական տնտեսության, ճյուղի, միավորման, ձեռնարկության զարգացման գիտականորեն հիմնավորված, միլիոնավոր աշխատավորների կողմից ստուգված ծրագրեր, այսինքն՝ գտնել ժողովրդատնտեսական պլանի առավել լավագույն տարբերակը տարբեր մակարդակներում:

Ընդսմին, կառավարման կենտրոնական մարմիններն ապահովում են ամբողջ հանրային արտադրության համաձայնեցվածությունը, հաշվեկշռվածությունը, ստեղծում են դրա պլանաչափ զարգացման ընդհանուր պայմաններ և չեն զբաղվում կառավարման համեմատաբար մասնավոր հարցերով՝ անմիջականորեն ձեռնարկություններում և միավորումներում: Այդ հարցերը լուծում են իրենք՝ արտադրական կոլեկտիվները: Հասկանալի է, որ նրանց այդպիսի աշխատանքը հասարակական նշանակություն է ստանում միայն այն դեպքում, երբ ձեռք է բերվում լավագույն զուգակցում կենտրոնացված կառավարման և տեղական նախաձեռնության միջև: Ահա ինչու ՍՄԿԿ XXV համագումարը նշեց տնտեսության կառավարման մեջ դեմոկրատական ցենտրալիզմն էլ ավելի ամրապնդելու անհրաժեշտությունը, արգելք դնելով գերատեսչական և տեղայնական տենդենցների առջև, ղեկավարության վերին էշելոնները բեռնաթափելով մանր գործերից, խրախուսելով մասսաների ինքնագործունեությունը, ապահովելով օպերատիվությունն ու ճկունությունը որոշումների ընդունման գործում:

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի զարգացումը հնարավորություն է ընձեռում նոր աստիճանի բարձրացնել աշխատավորական լայն զանգվածների ինքնագործունեությունը: Տնտեսական գործունեության որակի բարձրացման խնդիրների ստեղծագործական լուծման օրինակներից է Դարնիցայի մետաքսի կոմբինատի (ք. Կիև) աշխատանքային կոլեկտիվի փորձը: Նյութական խրախուսման վերաբերյալ այստեղ մշակված կանոնադրությունը հատուկ ուշադրություն է նվիրում աշխատողի նախաձեռնությամբ արտադրանքի աշխատատարությունն իջեցնելու հարցին: Այժմ ջուլհակուհիները շահագրգռված են բազմադազգահ սպասարկումն ընդլայնելու և արտադրության նորմաները բարձրացնելու մեջ, քանի որ աշխատավարձի ֆոնդի ստացված խնայողությունն զգալի չափով օգտագործվում է նրանց պարգևատրման համար: Այս ամենը մյուս միջոցառումների հետ միասին



նպաստում է արտադրության արդյունավետության բարձրացմանը, տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարմանը:

Կուսակցության XXV համագումարը դարձյալ ուշադրություն հրավիրեց այն բանին, որ ուղղակի կապ գոյություն ունի պլանավորման, տնտհաշվարկային մեխանիզմի կատարելագործման նպատակով նախանշված միջոցառումների և կառավարման կազմակերպական կառուցվածքի միջև: Վերջինս ձևավորվում է արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման ներգործությամբ: Այսպես, արտադրության համակենտրոնացման, մասնագիտացման, կոոպերացման, կոմբինացման զարգացման հետ միասին փոխվում է կառավարչական գործունեության կազմակերպումը՝ ճշգրտվում են կառավարման ստեղծված ապարատի ֆունկցիաները, վերացվում են նրա հնացած օղակները, ձևավորվում են կառավարչական նոր մարմիններ:

Այն դեպքերում, երբ կազմակերպական կառուցվածքի կատարելագործումը չի հասնում արտադրության զարգացման ետևից, երևան են գալիս կառավարչական գործունեության այս կամ այն անջատվածության, կառավարչական օղակների իրավունքների ու պարտականությունների որոշման ժամանակ անհստակության երևույթներ: Դա հանգեցնում է վրիպումների պլանավորման և օպերատիվ ղեկավարման, տնտեսական լծակների ու խթանների օգտագործման հարցում, բացասաբար անդրադառնում արտադրության զարգացման վրա: Ահա ինչու կուսակցությունը մի շարք կոնկրետ միջոցառումներ նշեց կառավարման կազմակերպական կառուցվածքի կատարելագործման բնագավառում, որպեսզի այն ավելի լավ համաձայնեցվի պլանավորման սիստեմի առաջընթացի, կառավարչական գործունեության ձևերի ու մեթոդների զարգացման հետ:

Մասնավորապես, կառավարման կառուցվածքի բարելավման համար հսկայական նշանակություն ունի համագումարի ցուցումն այն մասին, որ անհրաժեշտ է այս կամ այն կոնկրետ դեպքում ստեղծել կառավարչական մարմինների որոշակի սիստեմներ, որոնք կկոորդինացնեին մի շարք ճյուղերի և ռեգիոնների գործունեությունը, կրեին ողջ պատասխանատվությունը նրանց ընդհանուր զարգացման կոնկրետ ծրագրերի իրականացման համար: Տասներորդ հնգամյակում նախատեսված միջճյուղային լայն միջոցառումների իրականացումը ենթադրում է մինիստրությունների ու գերատեսչությունների իրավունքների ու պարտականությունների ճշգրտում՝ նրանց կողմից ճյուղային և ներճյուղային պլանավորումն իրականացնելու, նրանց ենթակա տնտեսությունների գործունեության կառավարման կազմակերպական մեթոդներ կիրառելու ասպարեզում:

Կառավարչական գործունեության կատարելագործումը հանրային արտադրության բոլոր մակարդակներում ՍՄԿԿ XXV համագումարն անմիջականորեն կապեց սկզբնական տնտեսական օղակի հետագա զարգացման, այսինքն՝ միավորումների ստեղծման հետ: Ի տարբերություն սովորական ձեռնարկությունների, միավորումներն արտադրության հանրայնացման ավելի բարձր մակարդակ ունեցող տնտեսական միավորներ են, և դա լայն ասպարեզ է բացում նոր տեխնիկան, աշխատանքի կոոպերացման ժամանակակից ձևերն արմատավորելու համար: Այստեղ օրգանական միասնության մեջ հանդես են գալիս արտադրությունն ու գիտությունը: Միավորումներն իրար հետ կապված ճյուղերի և ոլորտների՝ արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության, տրանսպորտի և այլնի ինտեգրացման կազմակերպական ձև են:

Բայց միավորումները ո՛չ միայն հանրային արտադրության հիմնական տնտհաշվարկային օղակի ժամանակակից ձևն են, այլև կառավարման նոր սիստեմ: Այն ընդգրկում է խոշոր տնտեսական կազմավորումներ, լայն ճյուղային և շատ միջճյուղային արտադրական պրոցեսներ: Աճում է կառավարչական գործունեության մասնագիտացումը, որը, մասնավորապես, արտահայտվում է օղակայնության կրճատման, բարձրագույն, միջին, ներտնտեսական կառավարչական մարմինների ֆունկցիաների կարգավորման մեջ: Ապահովվում է նաև կառավարման ավտոմատ սիստեմի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, կազմտեխնիկայի ավելի արդյունավետ օգտագործումը: Ընդհա-

գացող երկրներում արդեն կառուցվել կամ ներկայումս կառուցվում է մոտ 900 օբյեկտ։

Ղեկավարվելով հասարակական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքով, մեր երկիրը հաջողությամբ է ամրապնդում իր տնտեսական կապերը նաև զարգացած կապիտալիստական պետությունների հետ։ Վերջերս կնքված երկարաժամկետ առևտրական համաձայնագրերը Ֆրանսիայի, ԳՖՀ-ի, Ճապոնիայի, Իտալիայի, Շվեդիայի, Կանադայի, ԱՄՆ-ի, Անգլիայի և մյուս զարգացած կապիտալիստական երկրների հետ նախատեսում են առևտրի հետագա զարգացում։

1976 ԹՎԱԿԱՆԻ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 19-ԻՆ մեր կուսակցությունը, սովետական ժողովուրդը, եղբայրական բոլոր կուսակցությունները, առաջադեմ մարդկությունը մեծ ոգևորությամբ նշեցին խաղաղության անխոնջ մարտիկ, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ծննդյան 70-ամյակը։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևի անունն անխզելիորեն կապված է ժողովուրդների՝ հանուն համընդհանուր խաղաղության և միջազգային անվտանգության ողջ պայքարի հետ։ Ղեկավարելով լենինյան կուսակցության Կենտրոնական Կոմիտեի, սովետական ժողովրդի գործունեությունը վերջին 12 տարում, ընկեր Լ. Ի. Բրեժնևը ձեռք բերեց անսահման հարգանք աշխատավորների շրջանում։ Նա արտակարգ մեծ հեղինակություն է վայելում նաև միջազգային ասպարեզում։ Եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչների հանդիպումներում և խորհրդակցություններում նրա ելույթները, տեսական և պրակտիկ գործունեությունը սկզբունքային կարևոր դեր են կատարում համաշխարհային կոմունիստական շարժման համախմբման համար մղվող պայքարում։ Աշխարհի ժողովուրդները բարձր են գնահատում ընկեր Լ. Ի. Բրեժնևի անձնական ներդրումը միջազգային լարվածության մեղմացման, հանուն հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության, հանուն պատերազմների կանխման մղվող պայքարում։

Լ. Ի. Բրեժնևը նոր գրույթներով հարստացրեց սովետական պետության արտաքին քաղաքական գործունեության տեսությունն ու պրակտիկան, որոնք որոշիչ նշանակություն ունեն աշխարհի ժողովուրդների՝ հանուն միջազգային անվտանգության և համագործակցության ամրապնդման մղվող պայքարի։ ՍՍՀՄ արտաքին քաղաքականության պրոբլեմների շուրջ Լ. Ի. Բրեժնևի կատարած եզրակացություններն ու ընդհանրացումները ակտիվորեն կենսագործվում են կյանքում։

Սովետական ժողովուրդը հպարտ է, որ մեր հայրենիքը միշտ էլ եղել է, կա ու կմնա որպես հուսալի և հաստատ հենարան, որպես հավատարիմ բոլոր ժողովուրդների համար՝ հանուն լուսավոր, խաղաղ ապագայի նրանց պայքարում։ Ահա թե ինչու Սովետական Միության, ինչպես նաև մյուս երկրների ժողովուրդները հույսով ու հավատով ընդունեցին ՍՄԿԿ XXV համագումարի, կուսակցության Կենտկոմի 1976 թ. հոկտեմբերյան պլենումի որոշումները։ Նրանք բաց վկայում են, որ լենինյան կուսակցությունը նոր հզոր նախադրյալներ է նշում Սովետական Միության զարգացման համար, որը մեր ժողովրդի և ամբողջ առաջադեմ մարդկության երջանիկ ապագայի կարևոր գործոնն է։

«Ամենուրեք,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը Տուլա քաղաքում 1977 թվականի հունվարի 18-ին արտասանած իր ճառում,— մեր մեծ ժողովուրդը կլանված է խաղաղ ստեղծարար աշխատանքով, զբաղված է հսկայական թափի ու պատմական կարևորություն ունեցող գործով։ Եվ նա չի ուզում, որ պատերազմի սպառնալիքը ճնշի ծանր բեռի նման։ Կուսակցության XXV համագումարը Կենտրոնական կոմիտեին հանձնարարեց՝ անշեղորեն բազմապատկել ջանքերը կայուն խաղաղության համար մղվող պայքարում։ Այդպես էլ մենք գործում ենք, գործում ենք հաստատակամորեն ու հետևողականորեն»։



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 03002 Պատվեր 186 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$ Տիրաժ 15.400 Գինը 20 կոպ.
Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 10/II-1977 թ.
ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խաչհանյան փող. № 28:



# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայկական սովետական հանրագիտարան: Հ. 2: Ե., ԳԱ հրատ., 1976:

Մ. ՇԱՀԻՆՅԱՆ— Զորս դաս Լենինից: «Հայաստան» հրատ., 1976:

Հայկական ՍՍՀ վարչա-տերիտորիալ բաժանումը: «Հայաստան» հրատ., 1976:

Վ. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ— Հայկական ՍՍՀ բնակչությունը և աշխատանքային ռեսուրսների վերարտադրության արդի պրոբլեմները: Ե., ԳԱ հրատ., 1976:

Ա. ԲԵՅԲՈՒԹՅԱՆ— Բարձրագույն դպրոցը Սովետական Հայաստանում (1959—1969 թթ.): «Հայաստան» հրատ., 1976:

Ա. ՆԱԼՉԱՋՅԱՆ— Ինտուիցիան գիտական ստեղծագործության պրոցեսում: «Հայաստան» հրատ., 1976:

Բ. ՎԱՐԴԱՆՅԱՆ— Հանուն սոցիալիստական ապրելակերպի արմատավորման: Ե., «Գիտելիք» հրատ., 1976:

Օ. ՍԱՐԳՍՅԱՆ— Դիլիջանի գավառի բոլշևիկյան կազմակերպության պայքարի էջերից: Ե., «Գիտելիք» հրատ., 1976:

Յ. ԽԼՂԱԹՅԱՆ— Ռճաբանական տերմինների բառարան-տեղեկատու: Ե., «Լույս» հրատ., 1976:

Տերմինաբանության և խոսքի մշակույթի հարցեր: Ե., ԳԱ հրատ., 1976:

**В. Кудинов** и **В. Плетников** — XXV съезд КПСС — новый исторический рубеж в развитии советского общества на пути к коммунизму. «Знание», 1976.

**Ю. Молчанов** — Курсом мира и международного сотрудничества, свободы и независимости народов. «Знание», 1976.

**А. Смирнов** — Высшая цель экономической стратегии партии. «Знание», 1976.

**В. Загладин** — Историческая веха европейского и мирового развития (О Конференции коммунистических и рабочих партий Европы в Берлине). «Знание», 1976.

**Б. Жировов** — Нищета доктрины потребительства. Политиздат, 1976.

Искусство и идеологическая работа партии. «Мысль», 1976.

**Н. Метелкина** — За ширмой капиталистической интеграции. Политиздат, 1976.

**Л. Зиманов, Г. Кархин** — Пятилетний план на службу мира. Политиздат, 1976.

**К. Мамиконян** — Принципы историко-партийного исследования в трудах В. И. Ленина. «Айастан», 1976.

**Р. Навасардян** — Формирование марксистской концепции человека. Е., АН., 1976.

**Н. Егорова** — Женщина в современном мире. «Айастан», 1976.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## «ԿՐԻՍՏԱԼ» ԵՎ «ՎԻԽՐ»

*Ավտոմեքենաների լվացումը լուրջ պրոբլեմ է։ Այդ նպատակով ծախսվում է հսկայական քանակությամբ խմելու ջուր, իսկ օգտագործված ջուրն էլ այնքան է աղտոտվում թունավոր նյութերով, որ նույնիսկ կոյուղի չի կարելի թափել, առանց նախօրոք լրիվ մաքրելու։*

*Սովետական մասնագետները խմելու ջրի խնայողության և շրջապատի մաքրության համար մշակել են «Կրիստալ» և «Վիխր» սարքերը։ Առաջինը հնարավորություն է ընձեռում ավտոմեքենաները մի քանի անգամ լվանալու նույն ջրով։ Օգտագործված ջուրն անցնում է կոմպակտ, բարձրարդյունավետ մաքրման սիստեմով և կրկին լցվում լվացող ագրեգատները։ Իսկ կեղտը հավաքվում է բունկերում և ապա վառվում «Վիխր» սարքում, որի մեջ անծուխ այրվում են մնացորդները, ապահովելով օրգանական նյութերի ու մեխանիկական խառնուրդների լրիվ այրումը։ Արտածվող գազերն անհոտ են, թունավոր չեն և, ընդհանրապես, ոչ վնասակար։ Այդ գազերի ջերմությունը կարելի է օգտագործել ջրի տաքացման ու ջեռուցման համար։*

*«Կրիստալ»-ի և «Վիխր»-ի մի քանի փորձնական սարքեր հաջողությամբ գործում են Մոսկվայի ավտոտնտեսություններում։*

## ԵՐԵՔ ԿԻԼՈՎԱՏ՝ ԱՓԻ ՄԵՋ

*«Պստիկ է, բայց ճստիկ է». այսպես են կոչում բուլղարական «Յունգա» էլեկտրաջեռուցիչը։ Փոքր տուփում ամփոփված է 3.150 վատտ հզորությամբ էլեկտրաջեռուցիչ։ Բավական է «Յունգա»-ին մոտեցնել ջուրը և ջեռուցիչը միացնել 220 վոլտանոց հոսանքին, ջուրը կեռա։ Փոքր խառնիչը հնարավորություն կընձեռի ստանալու անընդհատ հոսող տաք ջուր։ Բուլղարիայում այդպիսի էլեկտրաջեռուցիչներն օգտագործում են ամառանոցներում, փոքր խոհանոցներում և լոգասենյակներում։*

## ՍԱՆՁՎԱԾ ՔԱՄԻ

*Դանիան «ամենաքամոտ» երկիրն է աշխարհում։ Ինչ այնտեղ սկսել են հաշվառել եղանակը, Դանիայում գրանցվել է միայն մեկ քամազուրկ շաբաթ։ Այդ իսկ պատճառով Յուտլանդյան թերակղզու արևմտյան մասում գտնվող Տվինդում տեղի կոլեջի մի խումբ դասատուներ և ուսանողներ մի քանի ինժեներների ու շինարարների հետ կառուցել են 2 հազար կիլովատ հզորությամբ քամու էլեկտրակայան։ Քամին պետք է պտտեցնի ապակեպլաստե հսկա պրոպելլերը, որի յուրաքանչյուր թիակը կշռում է մոտ 3 տոննա։ Ավտոմատը թիակն այնպես պետք է տեղադրի քամու հոսանքի նկատմամբ, որ պտույտների արագությունը չանցնի րոպեում 40 շրջադարձից. հակառակ դեպքում կենտրոնախույս ուժերը կկոտրեն թիերը։ Քամու էլեկտրակայանը տեղական էլեկտրացանցին կտա 50 հերց հաճախականությամբ փոփոխական հոսանք։*

*Քամու էլեկտրակայանը նույնպես հուսալի է և օգտավետ, ինչպես ջերմայինը կամ ատոմայինը և, միաժամանակ, չի աղտոտում միջավայրը։*

## ԴՆԵՊՐԸ ԿՄՆԱ ՄԱՔՈՒՐ

*Մոգիլյովի արհեստական թելերի կոմբինատում, որը խոշորագույնն է Եվրոպայում, շահագործման է հանձնվել մաքրիչ կառույցի երկրորդ հերթը։ Քիմիայի հսկայի «զտիչ»-ը օրվա ընթացքում թորում է մոտ 192 հազար խորանարդ մետր ջուր։*

*Այդ կպահպանի Դնեպրի մաքրությունը նաև հետագայում, երբ կգործարկվեն շտապելի արտադրության նոր հզորություններ։*